Հունիսի 1-ը երեխաների պաշտպանության միջազգային օրն է

ԳՈՒՐԳԵՆ ՍԱՐԳՍՅԱՆ

# Տաղ մանկանց

Թող գան նրանք,
ովքեր ունեն խարտյաշ վարսեր՝
բարեժպիտ արեգակի շողերի պես,
թող գան, ովքեր սևահեր են
երկնի թովիչ մութի նման, ուր հիացքից
Աստղիկներն են փունջ-փունջ ծաղկում…
Թող գան նրանք, ովքեր անուշ ձայնիկ ունեն
(Բոլոր մանկանց ձայնն է մաքուր),
Թող գան նրանք, որոնց շուրթն է դեռ պաղ,
ինչպես
Առավոտվա շունչ չդիպած թերթեր վարդի:
Թող գան նրանք ու գեղգեղան՝
Ցող կդառնան հնչյուններն նրանց շուրթին:
Թող գան ու ինձ առնեն իրենց մանկափունջը
Եվ միասին բուրարձակենք համատարած…

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 6•86




*Հանձնված է արտադրության 28.III.1986 թ.: Ստորագրված է տպագրության 4.VI.1986 թ.: ՎՖ 09045: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,0 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69492: Պատվեր 709: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 28.III.1986 г. Подписано к печати 4.VI.1986 г. Формат 70×100 1/16. ВФ 09045. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 69492. Заказ 709. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2

Շապիկը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՈՂԼՅԱՆԻ

Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ


ՈՒԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

# Պատերազմը

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՇՈՂԼՅԱՆԻ

Պատերազմը մեզ էլ հասավ: Ասացին, որ չափից ավելի չուտենք, ոչինչ չշռայլենք՝ ամեն ինչ արժեքավոր է: Ասացին, որ պատերազմի նամականիշեր գնենք: Մենք Ատլանտյան օվկիանոսի մյուս կողմը հազարավոր զինվորներ էինք ուղարկում, իսկ դրա համար փող էր հարկավոր: Մեզ կոչ էին անում դրամ վաստակել ու պատերազմի նամականիշեր գնել՝ հատը քսանհինգ սենթ: Միսս Գամման ասաց, որ մենք երեխաներս, նույնպիսի զինվորներ ենք, ինչպես և համազգեստ հագած տղամարդիկ: Շքերթներ էին լինում: Մենք տեսնում էինք երթաքայլող զինվորներին: Մենք նրանց տեսնում էինք Սաուդերն Փըսիֆիք կայարանում, գնացքների մեջ լցվելիս: Մենք լսում էինք նրանց մայրերի ու քույրերի լացը:

Գերմանացիները հանցագործ ազգ էին: Գերմանացիները ամբողջ ժողովուրդներ էին սրբում քարտեզի վրայից: Անտառներ, դաշտեր, քաղաքներ՝ ամեն ինչ ոչնչացվում էր մեծ ռումբերով: Գերմանիան նույնիսկ Ատլանտյան օվկիանոսում էր հանցագործություններ կատարում՝ խորտակվեց «Լուսիտանիան»՝ մի սուզանավ այն ծովի հատակը ուղարկեց:

«Լուսիտանիան» մի նավ էր, որի մասին երազում էր ամեն մի տղա: Նրա մասին մտածելիս վշտանում էի:

Ես սկսեցի ատել: Այո, գերմանացիները հանցագործներ են: Նրանք մեզ նման չեն: Մենք նրանց տեսանք «Ուսին առ» ֆիլմում, որտեղ Չարլի Չապլինն էր խաղում: «Սինեմա» կինոթատրոնում, նստատեղերի եզրերին թառած, ցնծությամբ ողջունում էինք Չարլիին՝ պատերազմի հերոսին: Կինոնկարում մենք տեսանք կայզերին ու սուլեցինք: Նա Գերմանիան էր: Չարլին ձեռ էր առնում նրան: Մենք մի



գլուխ ծիծաղում էինք, բայց, միևնույն է, ամեն ինչ տխուր էր, մենք դա զգում էինք, և մեզ չէիր խաբի, թեկուզև դա կատակերգություն էր:

Աշխարհի մեծագույն ոճրագործը կայզերն էր, և մենք ատում էինք նրան:

Այդ ատելությունն ամենուրեք էր: Ես մի քեռորդի ունեի, անունը՝ Սիմոն: Նա հենց որ խոսել սովորեց, ասաց.

— Ես կայզերի գլուխը կկտրեմ:

Ոչ ոք նրան չէր սովորեցրել ատել կայզերին: Նա այդ ատելությունը միջավայրից էր իր մեջ առել:

Մենք՝ մի խումբ տղաներ, սովորություն ունեինք մագլցել մեր ետնաբակի ընկուզենին: Ծառին թառում ու մտածում էինք կայզերին ոչնչացնելու տարբեր ձևերի մասին: Մեր մեջ մի տղա կար, որ տանջանքներ հորինելու վարպետ էր: Նրա անունը Ալբերտ Սավին էր, ինքը՝ լալկանի մեկը, բայց ամբողջ շրջակայքում նրանից լավ տանջանքներ հորինող չկար: Նրա տանջանքների գլխավոր նպատակը կայզերին մահվան դուռը հասցնելն էր, հետո առժամանակ հանգիստ թողնելը, որպեսզի դրան հաջորդեր մեկ ուրիշ տանջանք, այս անգամ ավելի դաժանը: Այդպիսով կայզերը հազար մահով կմեռներ ու ողջ կմնար, որ նորից խոշտանգվեր: Մեր հորինած տանջանքներից ամենաթեթևը գնդակահարությունն էր: Բայց դա շատ էր հասարակ: Ոչ ոք չէր ուզում, որ նա հենց այնպես մեռներ: Բոլոր փոքր տղաներն ուզում էին, որ նա շատ տառապեր, իր պատճառած տառապանքների դիմաց փոխհատուցելու համար: Որոշ խոշտանգումներ զվարճալի էին: Մեր մտքում Չարլի Չապլինն էր, և մենք զըվարճալի տանջանքներ, անակնկալներ ու նման բաներ էինք հորինում: Օրինակ, մենք կայզերին կհրավիրեինք կարևոր ճաշկերույթի ու մի մեծ աթոռ կառաջարկեինք: Դա էլեկտրական աթոռ կլիներ: Կայզերն ուտելիս նստած կլիներ այդ աթոռին, և մենք կմիացնեինք հոսանքը: Մենք այնքան հոսանք չէինք տա, որ նա տեղնուտեղն այրվեր, այլ աստիճանաբար կբարձրացնեինք լարվածությունը, և սենյակում գտնվող բոլոր մարդիկ կշրջապատեին նրան ու կծամածռեին դեմքերը, հիշեցնելով նրան «Լուսիթանիայի» մասին: Ես չեմ հիշում, թե ով հորինեց այդ տանջանքը, բայց հիշում եմ այն օրը, երբ դա հորինվեց: Պայծառ, ամառային օր էր, և մենք ծառին թառած, շատ ուրախ ասում-խոսում էինք: Ժամերով միտք էինք անում, թե ինչպես կարելի է տարբեր ձևերով մարդու ցավ պատճառել՝ առանց նրան սպանելու:

Սան Փաբլո փողոցում մի գերմանական ընտանիք մեր հարևանությամբ տուն ուներ: Նրանք հիանալի մարդիկ էին՝ պարզ ու հասարակ: Նրանք Հերման անունով տղա ունեին, որը մոտավորապես նույն տարիքին էր, ինչ և իմ եղբայր Գրիգորը: Նա խաղաղ տղա էր, փոքր-ինչ ինքնամփոփ, և խոսում էր քիչ օտարոտի արտասանությամբ, թեև բնիկ մեր հովտից էր:

Երբ մենք զրուցում էինք կայզերին տանջելու մասին, անձամբ ես քիչ էի միջամտում և, իհարկե, համարում էի, որ դա խաղ է, և մենք երբեք որևէ մեկի հետ դաժանորեն չէինք վարվի: Սակայն կային ուրիշ, ավելի մեծ տղաներ, որոնք գնալով սկսեցին ավելի ու ավելի գրգռվել և արդեն ցանկանում էին որևէ բան անել: Մեկը տվեց Հերմանի անունը: Իրոք, շատ տղաներ նման են իրենց հայրերին, և այդ լալկան Ալբերտ Սավինն ու Էդգար Ռալֆ անունով մի ուրիշ տղա սկըսեցին ատելություն սերմանել Հերմանի դեմ, որը երբեք ոչ մեկի ոչ մի վնաս չէր տվել:

Այդ ամենը սկիզբ առավ մեր ընկուզենու ծառի վրա, սակայն տարածվեց ամբողջ շրջակայքով մեկ: Տղաների խումբը՝ հինգ-տասը հոգի, որոշեցին հաշիվ տեսնել Հերմանի հետ: Իմ եղբայր Գրիգորը գնաց նրանց հետ: Ես էլ գնացի: Չէի ուզում, որ Հերմանին ցավ պատճառեն, բայց անկարող էի ստիպել ինձ տանը մնալ: Մտածում էի, որ եթե մնամ տանն ու չտեսնեմ, թե ինչ էր կատարվելու, կըմեռնեմ: Իմ եղբայր Գրիգորն ու ես կողք-կողքի էինք քայլում, և մենք մեծ տղաներից ետ մնացինք: Ճիշտն ասած, մենք այդ խմբի հետ կապ չունեինք, բայց զգում էինք, որ այդ ամենի սկիզբ է առել մեր ծառի վրա, և ուզում էինք տեսնել, թե ինչ է լինելու:

Խումբը հասավ Սան Փաբլո փողոց: Էդգար Ռալֆը մոտեցավ Հերմանենց դըռանն ու թակեց: Խումբը, փողոցի լայնքով մեկ կանգնած, սպասում էր: Դուռը բացեց Հերմանի մայրը: Էդգար Ռալֆը մի րոպե խոսեց նրա հետ ու մոտեցավ խմբին:

— Տանը չէ,— ասաց Էդգար Ռալֆը:— Մայրն ասաց, որ քաղաք է գնացել՝ շու-

տով կվերադառնա:
Իմ եղբայր Գրիգորը հայերեն ասաց, թե հուսով է, որ նա տուն չի վերադառնա:
Սակայն Հերմանը վերադարձավ: Ինչ-որ մեկը նրան տեսավ Սան Փաբլո փողոցով բարձրանալիս, և խումբը վազեց նրա կողմը: Ինչ-որ մեկը հարցրեց:
— Դու գերմանացի՞ ես:
Հերմանն ասաց.
— Այո:
Ինչ-որ մեկը հարցրեց.
— Դու ատո՞ւմ ես կայզերին:
Հերմանն ասաց.
— Ոչ, ես ոչ ոքի չեմ ատում:
Այդ ժամանակ ինչ-որ մեկը հարվածեց Հերմանի դեմքին: Ինչ-որ մեկը ոտք գըցեց նրան, ու նա ընկավ: Ինչ-որ մեկը ցատկեց նրա վրա, և մյուսները սկսեցին ծեծել ու քացահարել:
Դա երկու րոպե էլ չտևեց: Ամեն ինչ շուտ ավարտվեց: Մենք պատկերացնում էինք, որ փոքրիկ զինվորներ ենք: Մենք պատկերացնում էինք, որ արդարության պաշտպաններ ենք: Երբ Հերմանի քթից արյուն եկավ, նրան հարցրին.
— Դե, հիմա ասա, ատո՞ւմ ես կայզերին:
Եվ նա բղավեց.
— Ոչ, ես ձեզ եմ ատում:
Երբ նրանք տեսան, որ Հերմանը, մեկ է, կայզերին չի ատելու, բաց թողին: Նըրանք ծիծաղում էին Հերմանի վրա ու ծամածռվելով կապկում էին նրա լացը, նրա ետևից ընկած հրում, հարվածում ու քացահարում էին: Նրանք դա անում էին ամբողջ ճանապարհին, մինչև Հերմանենց տան աստիճանները, բայց նա չփորձեց փախչել: Հերմանը գավթի աստիճաններով բարձրանում էր, երբ մայրը տնից դուրս եկավ ու տեսավ նրան: Մայրը նետվեց դեպի որդին ու օգնեց նրան տուն մտնել: Նա ապշած էր ու տղաներին ոչ մի խոսք չասաց: Տղաները, հայհոյելով ու ծիծաղելով, մի որոշ ժամանակ էլ կանգնեցին տան առջև, իսկ հետո հեռացան:
Այդ գիշեր, երբ անկողնում էինք, ես իմ եղբայր Գրիգորին հարցրի.
— Գրիգոր, դու ատո՞ւմ ես գերմանացիներին:
Եվ իմ եղբայր Գրիգորը հարցրեց.
— Ի՞նչ:
Ես մի անգամ էլ հարցրի.
— Դու գերմանացիներին ատո՞ւմ ես, Գրիգոր:



Նա միաժամանակ ոչինչ չասաց, բայց ես գիտեի, թե ինչ է մտածում:
— Ոչ, ես նրանց չեմ ատում,— ասաց նա:— Թե ինչն եմ ատում, չգիտեմ, բայց մի բան ատում եմ՝ դրանց այսօրվա արածն եմ ատում: Դա եմ ես ատում: Այ, հենց դա է, որ ես ատում եմ:

Անգլերենից թարգմանեց
ԳԱԳԻԿ ՀԱԽՎԵՐԴՅԱՆԸ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



Տասնմեկամյա ՎԱՀԵ ՋՈՀՐԱԲՅԱՆԸ սովորում է Երևանի № 164 միջնակարգ դպրոցում: Շատ է սիրում նկարել:
Այսպիսին է նրա գույների աշխարհը:

«ԿԱՐԱԲԱՍ-ԲԱՐԱԲԱՍ»

«ԾԱՌ»

«ԾԱՂԻԿՆԵՐ»

«ԻՄ ԽԵՂՃ ԳԱՅԼԸ»



ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ • ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ



# Ի՞նչ իմանամ

Ի՞նչ իմանամ՝
Ինձ ինչ կտան
Ծաղիկները գարնանային:
Ի՞նչ իմանամ՝
Ինձ ինչ կասեն
Տերևները աշնանային.
Կշշնջա՞ն ուրախությո՞ւն,
Թե՛ լուռ թախիծ ու տրտմություն:
Ի՞նչ իմանամ՝
Ինձ ինչ կտա
Հանդիպումը այս ըղձալի,
Իմ աչքերը կարցունքոտվե՞ն, թե՛
կժպտան,
Ի՞նչ իմանամ...



# Աստղերը

Ի՞նչ են մտածում
Աստղերը կապույտ,
Լուռ մենության մեջ:
Ինչո՞ւ են այդպես
Պայծառ շողշողում,
Ո՞ւմ են երազում,
Ո՞ւմ են կարոտում՝
Ի՞նձ, քե՞զ, թե՞ նրան,
Ծաղիկի՞ն, ծովի՞ն,
Թե՝ ուրիշ աստղի,
Ոչ ոք չգիտի:
Եվ շատ հաճախ էլ՝
Չդիմանալով կարոտին մաշող,
Իրենց բարձունքից
Գահավիժում են...
Ի՞նչ են մտածում աստղերը
Կապույտ,
Լուռ մենության մեջ...

ՄԱՆՈՒՇ ՄԱՄՅԱՆ
Երևան, № 102 միջն. դպրոց,
10-րդ դասարան

# «ՀԵՏՔԵՐԻ ՀԵՏՔԸ...»

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ



Երբ ուզում են մի բան ասել,
Իրենց սրտի խոսքը կիսել՝
Ծիտիկները ծլվլում են,
Ջկնիկները խլվլում են,
Խոզուկները խռխռում են,
Ճնիկները գռմռում են,
Փիսիկները մռմռում են,
Իսկ քեզ նման բալիկները
Ղունղունում ու բլբլում են:

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## Հրաշք սունկը

Անձրև հո չէ՜ր... հեղե՜ղ...
Լավ էր՝ մի սունկ գտանք,
Եվ վազեցինք խմբով
Ու նրա տակ մտանք:

Մտանք, բայց նեղ էր շատ.
Սունկը գուցե ջարդվեր,
Ասի՝ ելնեմ ես դուրս,
Թեկուզ՝ լրիվ թրջվեմ:
— Չելնե՜ս,— սունկը կանչեց,—
Հիմա կմեծանամ:
Եվ թափ տվեց իրեն
Ու մի հսկա դարձավ:

Դարձավ մի մեծ վրան
Ու գիրկն առավ նա մեզ:
... Ով թրջվում է, եկե՜ք,
Տեղ կլինի և ձեզ:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ





1945 թվականի աշնանը հրապարակվեցին մեր կառավարության հրամանագրերը Հայրենական պատերազմում աչքի ընկած մի մեծ խումբ սովետական զինվորների ու սպաների շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին: Պարգևատրվածների թվում էր Վիլհելմ Շուլցը, որի մասին գրված էր՝ «Գերմանական բանակի ունտեր-սպա (հետմահու)»: «Ո՞վ է Վիլհելմ Շուլցը, կասեք, ի՞նչ է արել գերմանացի ունտեր-սպան, որ արժանացել է մեր Միության կառավարական պարգևին»:

Ահա թե ինչ են պատմում փաստաթղթերը...

Դեպքերը ծայր առան 1941 թվականի հունիսի 22-ի գիշերը, երբ խորհրդային սահմանի մոտ կանգնած գերմանական դիվիզիայի հրամանատար գեներալ-մայոր Ֆլիկի ննջարանի զանգի զիլ ձայնը ստիպեց նրան արթնանալ և զայրացած նստել անկողնում: Ժամը 11-ից հետո, երբ նա պառկում էր քնելու, ոչ ոք այլևս իրավունք չուներ նրան անհանգստացնել: Նույնիսկ այն ժամանակ, երբ Ֆլիկի որդին սպանվեց Ֆրանսիայում, սպա-

յակը գերադասեց այդ մասին հայտնել միայն առավոտյան, որովհետև Ֆիկն ընդունակ էր նույնիսկ գնդակահարել նրանց, ովքեր փորձում էին իրեն խանգարել գիշերը: Ուրեմն ի՞նչ էր պատահել:

Արագ ներս մտած օգնականը հանձնեց զմռսած կնիքներից ծանրացած մի մեծ ծրար, և դեռ քնից փակվող աչքերով Ֆիկը կարդաց հետևյալը.

«Բացարձակ գաղտնի.

Դիվիզիաների, գումարտակների և ըստորաբաժանումների հրամանատարներին. բանալ անձամբ, 1941 թ. հունիսի 22-ին, ժամը ուղիղ 2.00-ին: Ֆյուրերի հրամանով՝ ով համարձակվի բանալ ծրարը նշված ժամից թեկուզ երեք րոպե շուտ կամ ուշ, կհանձնվի ռազմադաշտային դատարանին և կդատվի որպես պետական հանցագործ»:

Քունն անհետացավ Ֆիկի աչքերից: Մի քանի անհանգիստ ժամեր անցնելուց հետո, ուղիղ ժամը երկուսին բացեց ծրարը: Այնտեղից դուրս եկավ Հիտլերի հրամանը, որը պարտավորեցնում էր գերմանական բանակի զորամասերին, ռազմածովային ուժերին, տանկային և մոտոմիավորումներին, ավիացիային ժամը 4-ին հարձակվել Սովետական Միության վրա: Կարգադրված էր այդ մասին տեղեկացնել զինվորներին հարձակումն սկսելուց մեկ ժամ առաջ:

Ուղիղ ժամը 3-ին զգաստ կանգնած գերմանական 169-րդ դիվիզիայի առջև գեներալ-մայոր Ֆիկը կարդաց ֆյուրերի հրամանը: Ընդունված կարգի համաձայն զինվորները չգոռացին «հոխ, հոխ», որովհետև դա կարող էր գրավել գետի մյուս կողմում գտնվող սովետական սահմանապահների ուշադրությունը: Հրամանը լսվեց լուռ, անաղմուկ:

Ընդհանուր շարքում կանգնած էր նաև ունտեր-սպա, գերմանական Այզենախ քաղաքի փականագործ Վիլհելմ Շուլցը: Նա նույնպես մյուսների նման լուռ լսեց ֆյուրերի հրամանը, բայց մտքերի ինչպիսի՞ փոթորիկ էր տեղի ունենում նրա գլխում...

Ուրեմն ի՞նչ. նացիստները պատրաստվում են խուժել Սովետական Միության սահմաննե՞րը, այն երկրի, որի մասին միշտ սիրով ու հարգանքով են խոսում գերմանական բանվորները, Գերմանիայի բոլոր հասարակ մարդիկ: Եվ այն էլ այն դեպքում, երբ բոլորովին վերջերս բարեկամության դաշնագիր կնքվեց Սովետական Միության հետ: Ոչ, սա անկարելի է: Ինքը, պրոլետար Վիլհելմ Շուլցը, Այզենախ քաղաքի բանվորը, չի կարող թույլ տալ, որ սրանք ձեռք բարձրացնեն աշխարհիս առաջին բանվորական պետության վրա: Նա պե՛տք է, պարտավոր է կատարել իր քաղաքացիական ու հայրենասիրական վեհ պարտքը: Կանգնեց նրա աչքի առջև կինը՝ Էրնան, և մի տարեկան սիրելի որդին՝ Հերմանը: Ծանր կլինի նրանց վիճակը, նրանց կսպասվի միայն տառապանքներ: Բայց միևնույն է, անգամ դրանք չկարողացան կասեցնել Շուլցին:

Եվ գերմանական բանակի ունտեր-սպա Շուլցը հենց այնպես, ինչպես որ կար՝ լրիվ երթային համազգեստով, շեշտակիորեն դուրս եկավ շարքից և նետվեց սահմանաբաժան Սան գետի փրփրադեզ ալիքների մեջ:

Առաջին ուշքի եկողը գեներալ-մայոր Ֆիկն էր: Խլելով զինվորներից մեկի ավտոմատը, նա սկսեց կրակահերթ կրակահերթի հետևից ուղարկել դեպի լողորդը: Նրան շուտով «ձայնակցեցին» ուրիշ ավտոմատներ: Շուլցը քաջ գիտեր, որ ափին կանգնած են ընտիր, միանգամայն կադրային զորամասեր, որոնք հիանալի գիտեն օգտագործել ավտոմատը:

... Երբ սովետական զինվորները, լեյտենանտ Տիխոնովի հետ միասին, ջրից դուրս քաշեցին Շուլցին, արդեն պարզ էր, որ նա հազիվ ապրի մի քանի րոպե: Տեսնելով կարմիր աստղակիր զինվորներին, հավաքելով իր վերջին ուժերը, նա հատ-հատ արտաբերեց.

— Լոյտենանտ, լոյտենանտ, կամրադ... հիմա ժամը չորսին... մեծ հարձակում ձեզ վրա... կռիվ կլինի... պատրաստվեցեք... պատրաստվեցեք...

Նա տեսավ, թե ինչպես ձգվեց ու խըստացավ լեյտենանտ Տիխոնովի դեմքը, ինչպես արագ ու շեշտակի սկսեցին իրար հաջորդել հրամանները: Եռաց, փոթորկվեց խորհրդային ափը: Վերջին բառերը, որ լսեց Շուլցը, Տիխոնովի հրամանն էր.

— Գումարտակ, կռվի պատրա՜ստ...

Անցան արհավիրքի տարիները, եկավ 1945 թվականի մայիսը և ավետեց հաղթանակի ցնծալի լուրը: Մայիսյան պայծառ մի օր, ֆաշիզմի լծից նոր-նոր ազատագրված Այզենախ քաղաքի խուլ թաղամասերից մեկում, մի խումբ երեխաներ էին խաղում: Ինչպես միշտ, բոլորին գլ-

խավորում էր Հերմանը՝ վեց տարեկան աշխույժ մի տղա, որը միշտ կարողանում էր մտածել սրամիտ խաղեր ու հետաքրքրական ժամանցներ: Երեխաները՝ խաղով տարված, չնկատեցին, թե ինչպես բակի դռան մոտ կանգնեց զինվորական մի ավտոմեքենա և նրա միջից ելավ սովետական ուսադիրներով մի զինվորական: Հերմանը նկատելով շտապեց նրան ընդառաջ: Իր հերթին զինվորականն էլ մոտեցավ և հարցրեց.

— Ասա ինձ, փոքրիկ, ես որտե՞ղ կարող եմ տեսնել ֆրաու Էրնա Շուլցին:

— Ֆրաու Շուլցն իմ մայրիկն է,— զարմանքից մեծ-մեծ բացված աչքերով ասաց Հերմանը:— Հերր օբեր, դուք նրա՞ն եք ուզում:

— Այո՛, այո՛,— ուրախացավ զինվորականը,—իսկ դու… դու Հերման Շո՞ւլցն ես:

— Ա-այո,— էլ ավելի զարմացավ Հերմանը:— Հերր օբեր, դուք ինձ որտեղի՞ց գիտեք:

— Հիմա կիմանաս,— ժպտաց զինվորականը,— նախ տար ինձ, խնդրում եմ, մայրիկիդ մոտ:

… Հետագա ամբողջ խոսակցությունը մեկընդմիշտ մեխվեց ու մնաց փոքրիկ Հերմանի հիշողության մեջ: Փոխգնդապետ Տիխոնովը, չթաքցնելով արցունքները, պատմում էր այն մեծ սխրագործության մասին, որ կատարել էր Վիլհելմ Շուլցը և ընկել հերոսի մահով, պատերազմից մի քանի ժամ առաջ: Ֆրաու Էրնան լսում էր նրան հանգիստ, բայց մոր լցված աչքերին նայելով, Հերմանը հասկացավ, թե ինչ է կատարվում նրա հոգում: Վերջում Տիխոնովը, գրպանից զգուշությամբ հանելով, սեղանին դրեց Վիլհելմ Շուլցի արյունոտված փաստաթղթերն ու ժամացույցը, որ կինը նվիրել էր ամուսնուն, նրա երեսնամյակի առթիվ:

— Իսկ դուք գիտե՞ք, թե որքան են տանջել մեզ,— քիչ լռելուց հետո խոսեց ֆրաու Էրնան,— գեստապոյականները պահանջում էին, որ ես հանդես գամ ռադիոյով և դատապարտեմ ամուսնուս արարքը, մամուլում հրաժարվեմ նրանից: Երբ ես այդ ոչ միայն չարեցի, այլև ասացի, որ ես պարծենում եմ նրանով, նրանք ինձ սկսեցին տանջել, օրերով չէին թողնում նստել, չէին թողնում քնել, իսկ երբ ես վերջապես քնում էի՝ դույլերով սառը ջուրը լցնում էին գլխիս: Եվ այդ բոլորը անում էին… որդուս ներկայությամբ…

—Այժմ ես ուրախ եմ, որ իմ ամուսինը չի խայտառակել գերմանական բանվորի բարձր ու ազնիվ անունը,— արցունքները կուլ տալով իր խոսքն ավարտեց ֆրաու Էրնան:

Այս պատմությունը ավարտվեց… Երևանում:

Ինչպես գիտեք, Մեսրոպ Մաշտոցի անվան հին հայկական ձեռագրերի ուսումնասիրության գիտահետազոտական ինստիտուտը, այսինքն՝ Մատենադարանը, ունի իր մեծ ցուցահանդեսը, որը տեսնելու համար աշխարհի բոլոր ծայրերից գալիս են զբոսաշրջիկների բազմաթիվ խմբեր: Անցյալ տարվա ամռանը ինձ հանձնարարվեց այդ խմբերից մեկին ծանոթացնել Մատենադարանի նյութերին: Ինչպես ընդունված է, ես նախ սկսեցի նրանց կազմը ներկայացնող ցուցակին ծանոթանալ: Սենյակում նստած կարդում էի անուն-ազգանունները. «Գրեսսի Միլլեր—ուսուցչուհի, Յոախիմ Մեյերխոլդ—ինժեներ-քիմիկոս, Լեո Գրասս—բանվոր…»:

Եվ հանկարծ՝

«Հերման Շուլց— ժուռնալիստ»:

Շունչս ասես կտրվեց, զգացի, որ արագացան սրտիս զարկերը: Հերման Շուլց… Հերման Շուլց… Ուղեղիս մեջ աստիճանաբար արթնացան հիշողությունները: Ո՞վ է այս Հերման Շուլցը: Արդյոք ինձ հայտնի Հերման Շո՞ւլցն է, թե սա անուն-ազգանվան պարզ զուգադիպություն է: Գոնե հայրանունը լիներ կամ հայրանվան գեթ առաջին տառը, բայց ցուցակում, տարաբախտաբար, ուրիշ տվյալ չկար…

Եվ երևի այս էր պատճառը, որ մոտենալով ինձ սպասող գերմանացիների խմբին, խախտելով ընդունված կարգը՝ նախ՝ ներկայանալ, ապա տեղեկություններ հաղորդել Մատենադարանի մասին, ես հուզված հարցրի.

— Ո՞վ է այստեղ Հերման Շուլցը:

Առաջ եկավ միջին տարիքի, կապուտաչյա մի գերմանացի՝ ետ սանրած բացգույն մազերով, հաճելի ու պատրաստակամ ժպիտը շուրթերին:

— Ես եմ Հերման Շուլցը, պարոն:

— Ինչպե՞ս էր կոչվում Ձեր հայրը:

Գերմանացու կապույտ աչքերում հուզմունք երևաց: Քիչ լռելուց հետո նա հանդարտ արտաբերեց.

— Վիլհելմ Շուլց:

— Դե իհարկե՛,— ես զգացի, որ գո-

ռում եմ,— Դուք փականագործ Վիլհել Ծուլցի որդի Հերման Ծուլցն եք: Ձեր մայրը կոչվում է ֆրաու Էրնա, Էրնա Ծուլց: Դուք ապրում էիք Այզենախ քաղաքում...

Գերմանացին կես-գոհունակ ժպտում էր:

Հենց այդտեղ էլ ինձ սպասող գերմանական տուրիստական խմբին ես նախ պատմեցի վերոհիշյալ ամբողջ պատմությունը, ապա և նրանց ներկայացրեցի Հերման Ծուլցին: Այնուհետև խումբը առաջնորդեցի ցուցասրահ (խոստովանում եմ՝ շատ արագ ու հապճեպ), և հետո ես ու Հերման Ծուլցն առանձնացանք:

Մա՞յրը. ոչ, մայրն արդեն չկա: Նրա առողջությունը քայքայված էր, և վերջին տարիներին միայն դեղորայքով էր ապրում: Հեշտ բան չէ գեստապոյի զնդաններում լինելը, այն էլ՝ մի քանի տարի: Բարեբախտաբար ֆրաու Էրնան ոչ միայն տեսավ ֆաշիզմի կործանումը, այլև իր մեծ եռանդով մասնակցեց նոր Գերմանիայի կառուցման աշխատանքներին:

... Ինքն ի՞նչ է անո՞ւմ: Ժուռնալիստ է, մոր մահվանից հետո փոխադրվել է Արևելյան Բեռլին և կնոջ ու երկու երեխաների հետ ապրում է այնտեղ:

— Իսկ ինչպե՞ս է դրությունը Ֆեդերատիվ Գերմանիայում,— վերջին հարցը տվեցի ես:

Հերմանը հառաչելով կախեց գլուխը:

— Վատ է, պարոն, շատ վատ,— խռովքով լի ձայնով խոսեց նա,— այնտեղ դարձյալ գլուխ է բարձրացնում ֆաշիզմը: Երիտասարդության մի զգալի մասի շրջանում վերսկսել են նախկինի նման իրար ողջունել «Հայլ Հիտլեր» կամ «Հիտլեր հոխ» բացականչությամբ՝ աջ ձեռքը շեշտակի առաջ նետելով, հավաքույթներին երգում են ֆաշիստական Գերմանիայի հիմնը, տարեց գերմանացիները փողոցում բացահայտորեն շրջում են հիտլերյան Գերմանիայի ժամանակվա շքանշաններով ու զինվորական տարբերանշաններով, հրեաների տան դռների, նրանց գերեզմանների վրա դարձյալ հայտնվում են «ձեզ քիչ ենք կոտորել», «ձեզ չվերջացրեցին մեր հայրերը, կանենք մենք» մակագրությունները...

— Պայքարը ֆաշիզմի դեմ շարունակվում է, պարոն,— բորբոքված խոսում էր Ծուլցը,— և ես ուրախ եմ, որ իմ հոդվածներով մասնակցում եմ այդ պայքարին: Դա հիմա հարցերի հարցն է մեզ համար:

ՍՈՒՐԵՆ ԾԻԿՅԱՆ



ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Կկուն և տղան

Բարձրիկ ծառից կկուն կանչեց.
— Կու-կու:
— Ո՞վ է,— ցածից տղան հարցրեց,—
Եր-գում:
— Ես եմ, ես եմ, ինձ Կկու են
Ա-սում:
Տղան հարցրեց՝ ասա, ի՞նչ ես
Ու-զում:
Կկուն կանչեց վերևից ցած.
— Անձ-րև:
— Կթրջվես,— տղան ասաց,—
կթըրջ-վես:
— Ճաշ եմ եփում, սակայն չունեմ
Ես-ջուր,
— Դույլը առնե՞մ, գնամ-բերեմ
Քեզ ջուր:
— Թե ջուր բերես, ճաշից քեզ էլ
Կր-տամ:
Իսկ դու ունե՞ս, արդյոք,
Գը-դալ:
— Մի վախեցիր, գնա ջուր բեր
Ծուտ-շուտ,
Ունեմ շերեփ ու գդալներ
Յոթ-ութ,
Մենակ ես չեմ, ունեմ նաև
Ծու-տեր,
Դե, շտապիր, ջուր բեր՝ եփեմ,
Ու-տենք:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԱՐՏԱԿ ՎԱՐԴԱԶԱՐՅԱՆ

# Ցոլիկը

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Վաղ գարնան կարճ օր էր, առաջին դասարանը երկրորդ հերթ էր, ինքը խաղով էր ընկել, ուշ եկավ: Հայրը չկար. այդ ժամերին տանն էր լինում՝ տանը չէր: Վառարանի վրա ճաշի կաթսան դատարկ էր, հաց կտրեց, պանիր վերցրեց, դուրս եկավ, նստեց բակի կացնահարվելուց մաշված գերանին:

Հավերը թռցնում էին ձեռքից ընկած հացի փշրանքները, իրար քրքրում, կչկչում չարացած: Կարմրափետուր աքլորը՝ հեռու կանգնած, աշխատում էր անփութար պահել ինքնասիրությունը:

Սարերի կատարներից թաց մշուշն իջավ, լցվեց գյուղը: Ծառերը փոշոտվեցին:

— Հայրիկը չեկավ,— արթարթաց Ցոլիկը: Վեր կացավ, փեշի փշրանքները թափեց, մառանից ծակ ամանով գարի բերեց: Մի ակընթարթում հավերը վերացրին գարու հատիկները, աղջկա ոտքերի տակ ընկած վայնասուն բարձրացրին: Մի բուռ գարի նա գցեց: Հավերն իրար կոտորում էին: Հեռու կանգնած աքաղաղը չհամբերեց, լողլող ոտքերը թփթփացնելով իրեն գցեց հավերի մեջ: Հավերը նրա քթի տակ թշշացրին, կտցեցին իրար: Աղջիկը գարին շաղ տվեց: Ցրվեցին, հանգիստ կտկտացրին, աքլորը կենտրոնում մենակ մնաց և գլուխը բարձր՝ կանչեց այդ երեկոյի իր վերջին, անժամանակ ծուղրուղուն:

Գոմից բարակ, երկար մայեց սպիտակ գառը: Մայր ոչխարը արոտից չէր վերադարձել:

Ցոլիկը մտավ տուն, լույսը վառեց, գլուխը պատուհանի սառն ապակուն հենած սպասեց հորը: Մութը ծեփվեց ապակիներին, դրսում ծառերն անտեսանելի դարձան: Սարսուռ անցավ մարմնով: Պատշգամբում բոխի փայտ կար՝ մի քանի կտոր բերեց, դարսեց պաղ վառարանի մեջ, հին մոխրի վրա, տաշեղներ

չճարեց՝ տակը դնի, հին գրքից մի քանի թերթ պոկեց, վառեց՝ փայտը չկպավ, ամբողջ գիրքը այրեց, կրակը չայրեց: Թղթի ծխից աչքերը կծկծացին, փոքրիկ բռունցքներով տրորեց կարմրած աչքերը, քաշվեց վառարանի կողքին դրված թախտի մի անկյունը, կուչ եկավ մոր շալի մեջ:

Ձեռքերը փայտացել, դասագրքի էջերը չէին թերթում, ստամոքսում ղողղում էին մի կտոր ծաղկած հացն ու աղի պանիրը, վառարանի պաղ լքվածահոտը և հոր բացակայությունը անտանելի էին դառնում, մոր ծղղված հին շալը տաքացնում էր հիշողության չափ....

Մայրը մահացել էր հենց այդ թախտի վրա, գլուխը թույլ ընկած ուսին, ձեռքը մեկնած դեպի վառարանը, կրակին թշշում, ջրաքամ էր լինում ճաշի կաթսան ու Ցողիկի ճիչը՝ «Մամա ջան»:

Հայրը ուշանում էր: Առաջին անգամ հայրն այդ ժամին տանը չէր, չէր համբուրել Ցողիկի թուշը՝ «Իմ տանտիրուհի աղջիկը»: Կոշտ երեսի ցավեցնող տաք-հարազատ հպումի անզսպելի կարոտը լացի էր փոխվում աղջկա ներսում:

Գոմում նորից մայեց գառը:

Ցողիկն իջավ թախտից, մեջքին փաթաթեց, թևատակերով տարավ, ետևում կշկռեց շալի մաշված տուտերը, հոր հին կոշիկները քըսքըստացնելով դուրս եկավ տնից, գոմի դռան մոտ ոտնաթաթերին կանգնելով՝ շոշափեց-գըտավ լույսի կոճակը, լույսը վառեց ու դուռը բացեց: Ծերտախառն գոլ կծվահոտը տաք փչեց դեմքին: Գառը մորը տեսնելու չզսպված մղումով դեմ առավ Ցողիկին, հպվեց նրան: Հավերը թառժաժ եղան, կչկչացին: Աքլորը թառի վրա կորցրեց հավասարակշռությունը, թևերը թափահարեց, վերագտավ դիրքը և կրկին կանչեց իր անպատեհ ծուղրուղուն:

Աղջիկը դուռը ծածկեց, պպզեց ախոռի մոտ, գլուխը դրեց գառան գլխին, փաղաքշեց մեջքը: Աքլորը մի քիչ նայեց աչքերը չռած, հանգստացավ, գլուխը հակեց փարթամ կրծքին, քնեց տիրակալի անհանգիստ քնով:

Գառը Ցողիկի գրկում հանդարտվեց, նուրբ գեղմի տակ մարմինը ջերմացավ ապահով տաքությամբ, աղջկի ոտքերը ծալեց, դրեց տակը, նստեց, գեղեցիկ, կաթնահոտ դունչը առաջ մեկնած սկսեց որոճալ գարնան թարմ խոտի իր պոկած առաջին փունջը:

Աղջիկը գառան շարժմանը հնազանդ նըստեց՝ ձմեռվանից մնացած չոր խոտի մի ծըվեն տակը քաշելով, մեջքը հենեց ախոռի ճաղին, գառան սիրելի, ննթարկվող գլուխը դրեց գոգին, ու նրա մանուկ շուրթերը գոմի կծու լռության մեջ «քույր, քույրիկ ջան» շըշնջացին:

Հարևանի ծեր շունը մի երկու բերան հաչեց, լռեց: Գառան մարմինը թույլ ցնցվեց, ականջները սրվեցին, ծնոտները դադարեցին ծամել, պարանոցի թույլ շարժումը թքախառն խոտի հետ բերանից դեպի ստամոքս տարավ անհանգստության ու սպասումի շաղախը: Աչքերի անհանգիստ մշուշը ուրախության կայծով լուսավորվեց:

Հակից լսվեց մայր ոչխարի հաստաձայն մայյունը, և գառը դուրս թռավ աղջկա գըրկից, դունչը խփեց դռանը, ոտքերով կտտահարեց փայտը և մորն ականջ չդնելով, մայեց՝ կարոտով ու բողոքով:

Ցողիկը վեր կացավ, քնահարամ աքլորի չար հայացքի տակ բացեց գոմի դուռը: Ոչխարը աղջկան հրելով՝ ներս ընկավ: Գոմում անտառի բողբոջահոտ ու մանուկ կանաչահամ տարածվեց: Գառը գլուխը խոթեց մոր ոտքերի արանքը, գտավ լիքը, սառը կուրծքը, պոչը խաղացնելով մեկ այս, մեկ այն պտուկը լպստեց, հետո մոր քըքշանքից թուլացած՝ չոքեց, սկսեց ագահ ծծել:

Մայր ոչխարը վարժվեց աղջկա ներկայությանը, փորփրեց չոր խոտի մնացորդը, մի քանի տերև ծամեց, քարաղ լիզեց, նստեց պարտքը կատարած և ինքնագոհ, աչքերը բաց ու խուփ անելով որոճաց:

Գառը՝ կուշտ, տրտինգ տվեց, մի քանի պտույտ վազեց, հեռվից թափ առնելով ղըչավարի եկավ ու չունեցած կոտոշներով պոզահարեց աղջկա մեկնած թաթը, մոր փաղաքուշ հայացքի տակ նոր ծլող կոտոշները քսեց ախոռի ճաղին, հանգստացավ, քաշվեց ոչխարի փեշի տակ, քնեց....

Աղջիկը մնաց մենակ:

Հավերը՝ թառի վրա կողք-կողքի, գառը՝ ոչխարի դնչի տակ, տաք մրափում էին: Աղջիկը կծկվեց, շուլալվեց շալի մեջ, չնայած գոմը գոլ էր, մի տեսակ մրսում էր: Զգույշ, տակի խոտը հետը քաշելով սահեց, հարցական հայացքը ոչխարի բարի աչքին՝ հպվեց նրան: Գառը դունչը կոխեց փեշը, ինքը գըլուխը դրեց մայր ոչխարի համաչափ իջնողբարձրացող մեջքին, նվաղեց, քնեց...

Հայրը եկավ, տանը չգտավ աղջկան, գլուխը կորցրած այս ու այն կողմ ընկավ, գոմում գտավ, գիրկն առած, թուշը համբուրելով, արցունքը զսպած՝ տուն տարավ:

Աղջիկը երազում զգաց հորը, փաթաթվեց պարանոցին, ու հայրը տարավ, պառկեցրեց, ծածկեց և շուռ եկավ կողքին ձեռքերը կրծքին խաչած կնոջը.

— Էս էլ մեր աղջիկը...



ԱՂՎԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

## Հայոց այբուբենը

Աղբյուրներ են տառերն հայոց,
Լույս է բխում ամեն տառից,
Նրանք մի օր ցած են իջել
Արարատի պաղ կատարից:

Իջել են ու լեռան կրծքին
Դարձել զույալ մարգարտաշար
Ու շողում են որպես ուժի,
Հավերժության, սիրո նշան:

Մենք ծարավ ենք, երեխաներ,
Այսպես զվարթ ու պարզ այոք
Պիտի անցնենք մեր տառերից
Ճառագայթող լույսի միջով:

Պիտի անցնենք ու պահպանենք
Մեզ ընծայված լույսը առատ
Եվ հիշենք միշտ, որ մենք ունենք
Ոչ թե մեկ, այլ՝ զույգ Արարատ:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ






ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆԵՐՈՐԴ

## Արարատի հայոց թագավորության սեպագիր արձանագրությունները

Արարատի հայոց թագավորության շրջանից պահպանվել է ավելի քան 450 սեպագիր արձանագրություն: Գրեթե բոլորը գտնվել են Մեծ Հայքի տարածքում: Այդ արձանագրությունները որոշ գիտնականների շփոթության մեջ գցեցին: Նախ փորձեցին դրանք կարդալ հայերեն: Բայց պարզվեց, որ երկու օտար լեզուներով են գրված: Այդ լեզուներից մեկը ասուրաբաբելերենն է, մյուսը՝ խուռիերենին մոտ մի լեզու: Խուռիերենը հին հարավ-արևմտյան Ասիայի 5 գլխավոր լեզուներից մեկն էր: Իսկ խուռիական ցեղերը հայերի դաշնակիցներն են եղել նախ Խաթթիի, ապա

Ասորեստանի դեմ պայքարելիս: Խուռիթեթեն ամենաառաջին սեպագիր արձանագրությունը գրվել է մ. թ. ա. մոտ 2200 թվականին, իսկ Արարատի թագավորության մեջ առաջին սեպագիր արձանագրությունները գրվել են դրանից մոտ 1400 տարի հետո: Այդ պատճառով Արարատի թագավորության արձանագրությունների մյուս լեզուն (ոչ ասուրաբաբելերեն) պայմանականորեն անվանում ենք նորխուռիերեն կամ մերձխուռիերեն:

Սեպագիրը, ինչպես գիտենք, ստեղծել են շումերները՝ Միջագետքի հնագույն բնակիչները: Նրանք սեպագիրը գործածում էին իրենց լեզվով՝ շումերերեն գրելու համար: Հետո սեպագիրը սովորեցին ասուրաբաբելացիները, որոնք սեպագրերով գրում էին և՛ շումերերեն, և՛ իրենց լեզվով՝ ասուրաբաբելերեն: Այնուհետև սեպագիրը տարածվեց ամբողջ հին հարավ-արևմտյան Ասիայում. սեպագիրը գործածում էին էլամցիները, խեթերը, հնդկաիրանցյանները, հույները, հայերը, պարսիկները...

Կարևոր է հիշել, որ գիրը և լեզուն տարբեր բաներ են: Այժմ էլ, օրինակ, լատինական գրով գրում են անգլերեն, իտալերեն, լեհերեն, ֆրանսերեն, գերմաներեն և եվրոպական այլ լեզուներով. գիրը նույնն է, լեզուները տարբեր: Այդպես էլ հնում շումերական սեպագրերով գրել են շատ լեզուներով՝ շումերերեն, աքքադերեն, էլամերեն, խեթերեն, խուռիերեն, նորխուռիերեն և այլն:

Պետք է իմանալ նաև, որ հնում հաճախ որևէ պետության մեջ խոսում էին մի լեզվով, բայց գրում բոլորովին այլ լեզվով կամ այլ լեզուներով արձանագրություններ: Հիշենք, որ մ. թ. ա. 2-րդ հազարամյակում Փոքր Ասիայի արևմուտքում կար Արծավա երկիրը: Նրա բնակիչները հույներ էին, բայց գրում էին խեթերեն սեպագիր արձանագրություններ: Նույն ժամանակամիջոցում Միջագետքի հյուսիսում կար Միտանի երկիր-պետությունը, որի բնակիչները և թագավորները հիմնականում հնդիկներ էին (հնդկաիրանցյաններ), բայց իրենց սեպագիր արձանագրությունները գրում էին խուռիերեն և ասուրաբաբելերեն: Հին պարսիկները երկար ժամանակ գրում էին էլամերեն սեպագիր արձանագրություններ և այլն:

Հիշենք, որ հայերի պատմությունը սկսվել է մ. թ. ա. 4-րդ հազարամյակում, բայց անհա հայերեն գրված առաջին արձանագրությունները մեզ հասել են մեր թվականության 5-րդ դարից: Դրանք Մաշտոցի ստեղծած գրերն են, որոնցով այժմ էլ գրում ենք: Մինչև Մաշտոց հայերը Հայաստանում, իրենց հարևան մի քանի այլ ժողովուրդների նման, գրել են տարբեր օտար լեզուներով և տարբեր գրերով:

Արդյոք մինչև 5-րդ դարը, նախքան Մաշտոցի գյուտը, Հայաստանում ուրիշ տառերով հայերեն գրե՞լ են, թե ոչ: Սա մնում է չպարզված հարց: Կան հույն և հայ հեղինակների վկայություններ, որ Մաշտոցից առաջ հայերեն գրել են, բայց առայժմ չի գտնվել նախքան 5-րդ դարը հաստատ հայերեն գրված մի քանի տող անգամ: Ուստի ոչ ոք չի կարող ճիշտն ասել, թե նախամաշտոցյան հայոց գիր ու գրականություն եղե՞լ է, թե՝ ոչ:

Եվ այսպես, նախքան Մաշտոցը հայերը գրել են այլ լեզուներով: Օրինակ, հայոց Արտաշես թագավորը մ. թ. ա. 189—160 թվականներին արձանագրություններ էր գրել տալիս արամեերեն (որ կոչվում է նաև քաղդեերեն), Տիգրան Մեծը մ. թ. ա. 95—55 թվականներին իր դրամների վրա գրել էր տալիս հունարեն: Իսկ մեր Արտավազդ II թագավորը մ. թ. ա. 55—34 թվականներին իր դրամներին էլ էր հունարեն գրել տալիս, ինքն էլ հունարեն թատերգություններ էր գրում, որոնք բեմադրվում էին այն ժամանակվա հայոց մայրաքաղաքի՝ Արտաշատի թատրոնում: Հետո Հայաստանում գրում էին նաև պահլավերեն (միջին պարսկերեն), ասորերեն, մինչև որ Մաշտոցը ստեղծեց մեր հրաշալի տառերը, և հայերը սկսեցին գրել մայրենի լեզվով:

Ասուրաբաբելերենը, նորխուռիերենը, արամեերենը, հունարենը և մյուս օտար լեզուները Հայաստանում երբեք ընդհանուր խոսակցական լեզու չեն եղել, դրանք խոսվել են Մեծ Հայքից հարավ և արևմուտք ընկած հարևան շրջաններում, նորխուռիերենը՝ գուցե և տեղ-տեղ Մեծ Հայքի հարավում:

Մեծ Հայքը իր շուրջ 300 հազար ք. կմ տարածքով մ. թ. ա. 4-րդ հազարամյակի վերջերից եղել է հայալեզու: Այդ երկրամասը, ինչպես վկայում են Խորենացին, հույն պատմիչ Ստրաբոնը և ուրիշներ, և, ինչպես ցույց է տալիս պատմության ամբողջ տրամաբանությունը, հնուց ի վեր եղել է հայոց լեզվի, հայկական ցեղերի բնակության լեզվացեղային (էթնիկական)

տարածքը: Բայց որպես արձանագրությունների գրավոր լեզու այստեղ մինչև 5-րդ դարը հայերը գործածել են վեց-յոթ օտար լեզուներ:

Արարատի հայոց թագավորությունում հայ քուրմերը ընդօրինակեցին Միջագետքի սեպագրերը, բայց պարզեցված: Այդ ժամանակաշրջանում Միջագետքի մշակույթը՝ խեցեղենը, քանդակը, զարդը, ճարտարապետությունը և այլն, թափանցում էին Հայաստան, ինչպես և Միջագետքին հարևան բոլոր մյուս երկրները: Միջագետքի մշակույթի անբաժան մասն էր սեպագիրը, որ նույնպես եկավ Հայաստան:

Հնում սեպագիր նշանները գիտեին միայն քուրմերն ու մոգերը, ժողովուրդը ոչինչ չէր հասկանում դրանցից: Այժմ էլ հատուկ սովորում են այդ նշանները, դառնում դրանց մասնագետը և ընթերցում սեպագիր արձանագրությունները:

Սեպագրերը երեք նշանակություն ունեն. 1) Վանկագրեր: Սրանք արձանագրություններում ամենաշատ գործածվածներն են և հիմնականում սրանցով ենք որոշում, թե սեպագիր արձանագրությունը ինչ լեզվով է գրված: Սեպերի ամեն մի խումբը մի վանկ է նշանակում, ինչպես՝ ա, աբ, ալ, բա, դի, ին, կի, տա, ույ և այլն:

Օրինակ՝



նշանը **մե** վանկն է,

նշանը՝ **նու** վանկը

նշանը՝ **ա** վանկը:

Հիմա կարդանք՝



—Մենուա:

Սա Արարատի հայոց թագավոր Մենուայի (Մենուի) անունն է:

2) Սեպագիր նշանների երկրորդ տեսակը որոշիչներ են. դրվում են բառի

Սեպագիր արձանագրություն էրեւան ամրոցի կառուցման մասին (Արին—բերդ)

սկզբում և ցույց են տալիս, որ այդ բառը քաղաքի անուն է կամ՝ երկրի և կամ գետի անուն:

Օրինակ՝  նշանը՝ դրվում է որևէ երկրի անունից առաջ և նշանակում երկիր:

3) Սեպագիր նշանների երրորդ տեսակը գաղափարագրերն են, ցույց են տալիս որևէ գաղափար, որևէ բան՝ ջուր, թագավոր, տուն և այլն:

Օրինակ՝  սեպախումբը նշանակում է **քաղաք**: Քաղաքը այլևս վանկերով չեն գրում, հենց այս մի սեպախումբը այդ իմաստը տալիս է:

Արարատի հայոց թագավորության նորխուռիերեն սեպագիր արձանագրություններում կա շուրջ 350 բառ-արմատ: Այդ բառերի քննությունը պարզ ցույց է տալիս, որ դրանց մեջ շատ են հայերեն բառերը:

Հայերենը գիտենք, որ հնդեվրոպական լեզու է, իսկ նորխուռիերենը՝ ոչ, նրա լեզվարնտանիքն անհայտ է: Ուրեմն, եթե նորխուռիերենում հանդիպում են բնիկ հայերեն, այսինքն՝ հնդեվրոպական բառեր, նշանակում է, դրանք հայերենից են անցել այդ լեզվին: Բնիկ հայերեն բառերն անցնելով նորխուռիերենի մեջ, ստացել են այդ լեզվի քերականական ձևերը: Օրինակ, մեր **ծառ** բառը նորխուռիերենում ծառի ձևն է ստացել, **ավելի** բառը՝ **աբիլի**, **սուր** բառը (զենք իմաստով)՝ **սուրի** կամ **շուրի**, **աստ** (այստեղ) բառը՝ **խուտինի**, **այն** բառը՝ **ինի**, **ես** դերանունը **եշե** կամ **եսե**, **առ** բառը՝ **առու**, **ուտեմ** բառը՝ **ատու** և այլն: Ձևափոխված են նաև հայոց քաղաքների ու գավառների անունները. օրինակ, Էրևանը գրված է Էրեբունի(ի), Վանը՝ Բիայն(ա), Տոփքը՝ Տուփան(ի), և այլն: Նորխուռիերեն արձանագրություններում տարբեր ձևեր ստացած կան նաև ուրիշ բնիկ հայերեն բառեր, ինչպես՝ **բան, պեղ(ել), արծիվ, ուղի, դնել, մնալ** և շատ ուրիշներ: Որոշ բառեր էլ ուրիշ հին լեզուներից անցել են հայերենին, որանից էլ նորխուռիերենին. օրինակ այդպիսի բառեր են **ողոտ**-ը, **բուրգ**-ը և այլն:

Առայժմ կարող ենք ասել, որ առաջին անգամ հայերեն բառեր գրվել են Արարատի հայոց թագավորության այս արձանագրությունների մեջ: Գուցե հետագայում պարզվի, որ ավելի վաղ շրջանի արձանագրությունների (շումերական, աքքադական և այլն) մեջ էլ կան հայերեն բառեր, բայց առայժմ առաջնությունը այս արձանագրություններինն է: Թեև այդ բառերը նորխուռիերենի մեջ են և այդ լեզվի քերականական ձևերն են ստացել, բայց դրանք հայերեն բառեր են՝ խոսակցական հայերենից թափանցած այդ լեզվի մեջ:

Ինչո՞վ բացատրել հայերեն բառերի մեծ քանակը նորխուռիերենում: Պատճառներից մեկն այն է, որ հայերը շատ հնուց ապրել են խուռիական ցեղերին հարևան, և Հայքի հարավում, հայկական շրջապատում բնակվող այդ ցեղերի լեզվի մեջ թափանցել են հայերեն բառեր՝ նախքան Հայքում նորխուռիերեն արձանագրությունները գրվելը: Ապա՝ Արարատի հայոց թագավորության մեջ արձանագրությունները գրում էին քուրմերը, որոնք հայեր էին ու հաճախ վատ գիտեին նորխուռիերեն լեզուն, և նրանք իրենց մայրենի լեզվի՝ հայերենի, բառերը դնում էին այդ լեզվի մեջ: Կամ երբ թագավորը հայերեն թելադրում էր արձանագրության բովանդակությունը, քուրմը թարգմանելիս երբեմն չէր գտնում նորխուռիերեն անհրաժեշտ բառեր, օգտագործում էր հայերեն այս կամ այն բառը՝ դնելով այն նորխուռիերեն քերականական ձևով:

Հիշենք նաև, որ նորխուռիերեն արձանագրությունները կաղապարային են, այսինքն՝ նույն նախադասությունները հաճախ կրկնվում են 10, 20, 30 անգամ և ավելի: Օրինակ, հայոց Իշփուինունի թագավորի մի արձանագրության մեջ կարդում ենք. «Իշփուինունին՝ Սարդուրի որդին այս տունը կառուցեց» նախադասությունը: Նույն տեղում 7 այսպիսի արձանագրություններ կան, և այդ նախադասությունը կրկնված է 21 անգամ:

Երբ համեմատում ենք նորխուռիերեն առաջին արձանագրությունները վերջինների հետ, տեսնում ենք, որ մոտ 250 տարի գրվել են այդ արձանագրությունները, և նրանց լեզուն զարգացում, փոփոխություն չի ունեցել, պահպանվել են նույն կաղապարները: Սա նշանակում է, որ Հայքում չխոսվող այդ լեզուն քրմական դասի մեջ հիշվել է իր բնորոշ արձանագրական կաղապարներով: Այսպիսի պայմաններում բնական է, որ հայ քուրմերի մայրենի լեզվի բառերը թափանցեին այդ լեզվի մեջ:

(շարունակելի)

ՎԱՐԴԳԵՍ ԲԱԲԱՅԱՆ

# Պակասում էր միայն մի ծիտ

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ



Չգիտեմ՝ համե՞րգ ասեմ, թե՞ հավաք,
տանձենու վրա ու տանձենու տակ
մի ճյուղից կախված հազար ու մի թև
ճտվտում են գիլ ու ճռճվում թեթև:
Ինչո՞ւ են վիճում այդպես եռանդով,
ինչո՞ւ չի զիջում մեկը մյուսին,
մրցո՞ւյթ է, գուցե, երգի ուրախ տո՞ն,
թե՞ հրաժեշտ է դա վերջալույսին...
Եվ հենց այդ պահին
սլացավ մի քար,
ու ծիտիկները
թռան սոսկահար,
միայն մի ծիտիկ չթռավ, ավա՜ղ,
կիսատիկ երգը մնաց օդից կախ...
Տանձենին, ասես, լացեց վշտահար,
ճյուղերը մեկեն խփվեցին իրար,
փոխվեց առվակի կարկաչը ուրախ,
նա էլ կանչեց՝ ա՜խ...

Փայտփորիկ բիբին՝ կրակը սրտում,
զանգ տվեց իսկույն շտապ օգնություն.
— Ձերո երե՞քն է,
զերո երե՞քն է...
Մի ճնճղուկի ճուտ...
Միայն թե՝ շո՜ւտ, շո՜ւտ...
Հիվանդանոցի փոքրիկ մուտքի մոտ
կանգ առավ կտրուկ
Շտապ օգնության մեքենան փութկոտ:
Բերին արագ
մի պատգարակ,
վիրավորին դրին վրան
ու վեր տարան:
Պրոֆեսոր Բուն՝
քնաթաթախ,
սև աչքերից
ակնոցը կախ՝
վերքը զննեց,
սիրտը քննեց
ու քրոջը դիմեց այսպես.

— Վիրահատե՛լ անմիջապես…
(Վախի՜ց, արդյոք, թե՞ սուր ցավից
ծիտը ծվաց մկնիկի պես):
    — Նարկոզ՝
    զերո, զերո տոկոս…
    Լանցե՛տ,
    պինցե՛տ…
Լորի՛կ, ոտքը պահիր ամուր,
մի տամպոն տուր…
Ի՞նչ ես լալիս…
Ա՜յ քեզ բուժքույր…
— Բժիշկ, փրկիր դու իմ ձագին,—
Խնդրում է մայրն՝ արցունքն աչքին:
Ու կրկնում են գիշեր ու տիվ
    հավքերն անթիվ.
    — Բժի՜շկ, փրկի՜ր…
— Նոր էր բացել կտուցը դեռ,
նոր էր տեսել կանաչ դաշտեր,
Ինչո՞ւ մթնեց երկինք–երկիր…
    Բժի՜շկ, փրկի՜ր…
Քանի՜ արտույտ, քանի՜ կաքավ,
քանի՜ կեռնեխ, երաշտահավ՝
    նստած ծառի,
    քարի վրա,
ծլվլում են, արցունք թափում,
հարցնում իրար ու տագնապում՝
    կապրի՞, արդյոք,
    ո՞վ կարող է ասել,
    ոչ ոք…

Վիրահատման լայն սրահից
նրան տարան զերո պալատ:
Մի թույլ լույս է շողում հազիվ
աչքերի մեջ մշուշապատ:
Կտուցը բաց ու խուփ անում,
ծվծվում է երբեմն անկապ,
մայրը կողքից չի հեռանում,
ջուր է տալիս նրան կաթ–կաթ:

Թութակն ամեն կես ժամը մեկ
հաղորդում է տալիս հատուկ.
«Փակ ջարդվածք կա ծնկի մասում,
ոտքը գիպսի մեջ է դրված»:
«Զարկերակը՝ յոթանասուն,
ջերմությունը՝ նորմալից ցած…»:

Ո՞վ քար նետեց պարսատիկից,
դաշտը զրկեց իր հավքիկից,
թռչներգն անուշ՝ իր մի լարից,
Թռչնաբույնից, թռչնապարից…
    Առավոտ վաղ
ծլվլում են հավքերն ուրախ.
    — ճի՛տ-վի՛տ,
    — ճի՛տ–վի՛տ…
Պակասում է միայն մի ծիտ…

# ԺՊԻՏՆԵՐ



● ՈՒՍՈՒՑԻՉ.— Ձեզանից որևէ մեկը կարդացե՞լ է Շեքսպիրի պիեսներից գոնե մեկը:

ԱՇԱԿԵՐՏ.— Ես կարդացել եմ երկու պիես: Դրանք են «Ռոմեոն» և «Ջուլիետը»:

● — Ջիմի,— հարցնում է հայրը,— ինչպե՞ս են գործերդ դպրոցում:

— Հիանալի, հայրիկ: Այսօր ուսուցիչն ասաց. «Եթե իմ բոլոր աշակերտները լինեին Ջիմիի նման, ես հենց այսօր կփակեի դպրոցը և կզբաղվեի ուրիշ աշխատանքով»:

● Ուսուցիչը ստուգում է Հանսի աշխատանքը:

— Հանս, ինձ թվում է, որ սա քո եղբոր ձեռագիրն է:

— Շատ հնարավոր է, պարոն ուսուցիչ, ես գրել եմ եղբորս գրիչով:

● Ուսուցիչը հարցնում է աշակերտին.

— Կարո՞ղ ես ասել՝ ինչո՞ւ է Եվրոպայի ժամանակն առաջ Ամերիկայից:

— Պարզ բան է, որովհետև Ամերիկան ավելի ուշ է հայտնաբերվել:

● — Դու շատ հիվանդ ես, Նիք:

— Օ, բժիշկ, շա՜տ:

— Ապա մի ցույց տուր լեզուդ:

— Օ, սիրելի բժիշկ, ոչ մի լեզու չի կարող պատմել, թե որքան հիվանդ եմ ես:



ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# ՂԱՓԱՆ

Իմ երկու կողմերում ուս-ուսի տված պարում էին լեռները, իսկ երբ ինքնաթիռը կանգնեց թռիչքագծի վերջում, քարացավ պարը, ու այդ պարի կենտրոնում մի պահ քարացա նաև ես: Շուրջս նայեցի. մի փոքր հեռու Ղափան քաղաքն էր՝ Սովետական Միության պղնձարդյունաբերության կարևոր կենտրոններից մեկը: Քաղաքը երկու լեռնաշարերի արանքում էր, ասես թաքուն պայքար է գնացել քաղաքի ու լեռնաշարերի միջև: Բայց հետո հաշտվել են, և, ահա, ծնվել են այս գեղեցիկ նորակառույցները, որոնք աստիճանաձև մագլցել են լեռներն ի վեր: Այդ շենքերը ղափանցիները «տեղական հրաշալիքներ» են կոչում: Համայնապատկերն հուշում էր, որ այստեղ մարդու ձեռքով ստեղծածը չի զիջում բնության գեղեցկությանը: Արյունատար երակի պես քաղաքի միջով ձգվում է Ողջի գետը, որի վրայի կամուրջները միմյանց են կապում քաղաքի աջ ու ձախ մասերը: Գլխավոր կամուրջի մոտ տեղադրված է Դավիթ-Բեկի քարեղեն արձանը: Հերոսը կարծես իր փոթորկոտ ձիով ուր որ է թռչելու է գետի վրայով, կարծես հեռվում, լեռների մեջ, դեռ իրեն են սպասում իր քաջերը:

Չորս կողմում լեռներ են: Թվում է, թե սիրտըդ պետք է նեղվի, որ տեսադաշտը փակ է, սակայն նրանց վեհությունը բացում է հոգուդ տեսադաշտը:

Պահեր եղան, երբ թվում էր, թե երկընքում եմ. երկինքոտ լեռներ էին՝ այնքան գեղեցիկ, որ նրանց համադրման մեջ պատահականությունը թվում էր բացառված: Պատահաբար չէ, որ ղափանցին հենց լեռների կրծքերին է կառուցել Ղափանը:

## ԴԻՍԿՈՏԵԿ

Քաղաքի № 27 սանատոր-գիշերօթիկ միջնակարգ դպրոցի բակը այգի էր՝ պտղատու ծառերով ու խաղահրապարակներով: Լավ կահավորված, կոկ ու մաքուր դպրոցը ունի նաև դիսկոտեկ: Կերպարվեստի ու գծագրության ուսուցիչ Լեռնիկ Առաքելյանն էր իր աշակերտների օգնությամբ պատրաստել ու

Լուսանկարը՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

կահավորել:

— Այստեղ հանդիպումներ ենք կազմակերպում,— ասաց նա,— նշում մեր երեխաների ծննդյան օրերը: Երաժշտություն ենք լսում, հանգստանում, հաճախ՝ նաև պարապում: Օրինակ՝ ունենք հին եգիպտական ճարտարապետությանը, եվրոպական գեղանկարչությանը վերաբերող գունավոր նկարներ, որոնք լուսապատկերի միջոցով ցույց ենք տալիս պաստառին, երեխաներին ծանոթացնում արվեստի գլուխգործոցների հետ: Այս ամենն առավել հաճելի է երաժշտության ուղեկցությամբ: Ստացվում է գեղեցիկ մի գեղարվեստական կոմպոզիցիա:

Դիսկոտեկում կային զանազան զվարճալիքներ, օրինակ՝ կառավարման վահանակների օգնությամբ հեռուստաէկրանի վրա կարելի էր զանազան խաղեր խաղալ, պաստառի վրա ցուցադրել մուլտեր, միացնել մագնիտաֆոնը և լսել զանազան կատակներ, նվագել: Եվ այս ամենը կարելի էր ուղեկցել գունալուսային զանազան պատկերներով:

Ինչ լավ կլիներ, որ բոլոր դպրոցները նույնանման անկյուններ ունենային: Դրանք էլ իրենց հերթին մանուկներին ձգում, կապում են դպրոցին:

## ՄԱՆԿԱԿԱՆ ԳԵՂԱՐՎԵՍՏԻ ԴՊՐՈՑՈՒՄ

Ղափանի մանկական գեղարվեստի դպրոցի միջանցքները յուրօրինակ ցուցահանդեսի էին վերածվել: Երեխաները դիտում էին իրենց ընկերների աշխատանքները, քննարկում, վիճում:

Դպրոցը գործում է 1972 թ.-ից: Ունի քանդակագործության, գծանկարչության, արվեստի պատմության, գեղանկարչության, դեկորատիվ-կիրառական արվեստի բաժիններ:

Ամեն ուսումնական տարվա վերջում դպրոցում կազմակերպվում են հաշվետու ցուցահանդեսներ, որոնց օգնությամբ հանրագումարի են բերվում ոչ միայն դպրոցի սաների, այլև ողջ շրջանի երեխաների աշխատանքները:

Դպրոցի սաները կապեր են հաստատել Չեխոսլովակիայի Ֆրիդեկ-Միստեկ քաղաքի գեղարվեստի դպրոցի սաների հետ, մասնակցել են մի շարք միջազգային ցուցահանդեսների (Ճապոնիա, Լեհաստան, Պորտուգալիա): 1981 թ.-ին, Մոսկվայում կայացած «Ես տեսնում եմ աշխարհը» պաստառի նկարիչների միջազգային մրցույթում դպրոցի սան Յուրի Փարսադանյանի «Ղափանյան պատկերներ» նկարաշարը արժանացել է «Պիոներսկայա պրավդա» թերթի մրցանակին: Այդ մրցույթին մասնակցել էին աշխարհի 75 երկրների երեխաներ, իսկ 1979 թ.-ին Լեհաստանի միջազգային ցուցահանդեսում դպրոցի սաներից Հենրիկ Միրզոյանի, Արմեն Առաքելյանի, Հասմիկ Հարությունյանի աշխատանքները նույնպես արժանացել են մրցանակների:

— Հույս ներշնչող սաներ շատ ունենք,— ասաց դպրոցի դիրեկտոր ընկեր Գրիգորյանը,— Բունիաթյան Միհրան, Սողոմոնյան Դիանա, Դոտինյան Կարեն, Մնացականյան Արա...:

Երբ դպրոցից դուրս էի եկել և քայլում էի Ղափանի փողոցներով, այն զգացողությունն ունեի, կարծես ողջ քաղաքն ու նրա շրջակայքը տեսել էի կտավի վրա, այնքան հարազատ էին երեխաները վերարտադրել իրենց հայրենի քաղաքն ու շրջապատող բնությունը:

## ԾԱԿԱՏԵՆ

Լեռան ճակատին է հենց գտնվում Ծակատեն գյուղը: Զրուցում էի «Աշխատանք» կոլտնտեսության գյուղատնտես, կոմերիտմիության քարտուղար Դավիթ Կոստանյանի հետ. «Եթե աշակերտներն անցյալ տարի մեզ չօգնեին,— խոստովանեց նա,— չէինք կարողանա պլանները գերակատարել»: Քայլում էինք սարալանջերից կորզված հողակտորներով: Ղափանի № 1 դպրոցի 9-րդ «Ա» և «Բ» դասարանների աշակերտները հողը մաքրում էին մոլախոտերից: Մի երկու տղա բահերը ձեռքերին առվի ջրին էին հետևում: Դասարաններից ամեն մեկին հողակտոր էր հատկացված: Հաճելի մի լարվածություն կար դպրոցականների աչքերում: Իրար չէին՝ ասել՝ եկեք մրցենք, բայց գաղտնի մրցում էին, թե ում հողակտորն ավելի բարեկարգ կլինի: Նրանք արտադրական պրակտիկան կարող էին անցկացնել քաղաքի տրիկոտաժի ֆաբրիկայում, բայց նախընտրեցին գալ գյուղ, աշխատել դաշտում:

## ՏԱՎ

Գյուղում ոչ մի աշակերտ չկար: Բոլորը դաշտում էին: Գնում էի նրանց մոտ ու մտածում՝ այս անտառապատ լեռների մեջ ի՞նչ դաշտ: Բայց այդ կողմերի բնությանը բնորոշ էին անակնկալները. ծառերի ետևից իմ առջև հանկարծ բացվեց մի բացատ՝ երեխաներով լի: Նրանցից ամենափոքրի անունը, ինչպես քիչ հետո իմացա, Սասուն էր:

— Ուժդ պատո՞ւմ է,— հարցրեցի նրան:

— Չպատի՝ հրե՞ն մեր տրակտորը, կօգնի,— ասաց նա՝ մատնացույց անելով դաշտի գլխին կանգնած իրենց՝ դպրոցականների տրակտորը:

— Երեխաներ, ուսումնական տարում ի՞նչ

գործեր եք արել,— ծեծված ու արհեստական տոնով հարցրեցի ես՝ ինքս իմ հարցից ամաչելով, որովհետև երեխաներն աշխատելու ընթացքում էին ինձ պատասխանում:

Նրանք ամաչկոտ-ամաչկոտ սկսեցին թըվարկել իրենց կազմակերպած միջոցառումները: Շատ էին ուրախացել, որ իրենց բասկետբոլի թիմը միջփնջային մրցումներում գրավել էր երկրորդ տեղը, պատմեցին, թե ինչպես ավտովազքի շարասյունը, որն անցնում էր Հայրենական մեծ պատերազմի հերոսների ծննդավայրերով, մտավ իրենց գյուղը նույնպես, և իրենք ինչպես հարկն է դիմավորեցին ավտոմրցավազքի մասնակիցներին:

Ծավը Սովետական Միության կրկնակի հերոս Հունան Ավետիսյանի ծննդավայրն է, պիոներները հպարտ էին դրանով:

Գյուղի նորակառույց դպրոցի մուտքին փակցված էր հերոսի դիմանկարը: Նա նայում էր ուղիղ աչքերիդ մեջ: Եվ հենց իր այդ հայացքով չէ՞ր նա հուշել Ծավ գյուղի դպրոցականներին, որ նրանք հանձն առնեն նաև մոտակա մի քանի լքված գյուղերում կանգնեցված զոհված մարտիկների հուշարձանների խնամքը: Ծավի պիոներները հաճախ այցելում են այդ գյուղերը, մաքրում հուշարձանները, ծաղիկներ դնում դրանց պատվանդաններին: Նրանց կապը այդ գյուղերի հետ հույս է ներշնչում, որ այդ բնակավայրերը մի օր դարձյալ բնակիչներ կունենան, այնտեղ կրկին կխլրտա կյանքը:

## ՍՈՍԻՆԵՐԻ ՊՈՒՐԱԿՈՒՄ

Գյուղից քիչ այն կողմ ծեր մարդու պես դնդնում էր Բասուտա գետը: Անտառի թավուտներում, մարդու աչքից հեռու թե ինչեր էին կատարվում, գետը գիտեր և մարդկանց իմաց էր տալիս. կարկո՞տ եկավ, սելա՞վ եղավ, լեռնային ո՞ր արահետն է բաց, ո՞րը քանդվեց-լցվեց գետը:

Ես գետի երկայնքով առաջ շարժվեցի դեպի Մթնաձոր: Ու էլի մի հրաշք գեղեցկություն, ու դարձյալ՝ անակնկալ. սոսիների պուրակ: Սոսին Հայաստանում սուրբ ծառ է համարվել, այն խորհրդանշան է եղել Արարատյան դաշտում, Բագարանում, Հայկական Կիլիկիայում: Սոսյաց անտառները շարժել են Հայաստանի թշնամիների նախանձը: Ծավի սոսիների պուրակը մի քանի անգամ օտար նվաճողները կտրատել են, ուզեցել են ոչնչացնել՝ վախենալով սոսիների գերբնական ուժից: Սակայն ամեն անգամ սոսիները նորից են ճյուղեր տվել, կանաչել: Ու դեռ կանգնած են՝ մարդակերպ սոսիներ՝ հողից դուրս ելած արմատներով, մերկ ու նախնական, անգաղտնիք, ոչինչ չունենք





թաքցնելու աշխարհից, ոչնչից չեն վախենում, նահապետներ են, հավաքվել են խորհրդի: Դետն էլ նրանց սուրհանդակն է եղել, ով գիտե, ինչ լուրեր է բերել հեռուներից...

Թրը՜մփ... կարմրապուտիկ ու պսպղուն



ԿԱՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ, 7 տ.
ԼՈՒՍԻՆԵ ՄԱՆՈՒՉԱՐՅԱՆ, 10 տ.
ՇԱՆԹ ՍԱՐԳՍՅԱՆ, 10 տ.
ՎԱՀԱԳՆ ՕՆԳԱՅԱՆ, 12 տ.



ինչ-որ բան է թպրտում խոտերի մեջ: Կռացա, որ տեսնեմ՝ ինչ է, ականջիս հասավ մանկական մի տագնապած ձայն.

— Թո՛ղ, իմն է, ի՛մ ձուկն է,—բղավելով մի տղա էր վազում դեպի ինձ: Երբ մոտեցավ, հիացական բացականչեց.— կարմրախա՜յտ... Հետո զգաց, որ տեղացիներից չեմ, և կարծես ամաչելով իր ավելորդ տագնապի համար, գետնից վերցրեց ու ինձ մեկնեց դեռևս կենդանի ձուկը.

— Առ...

— Չէ, ի՞նչ եմ անում,— պատասխանեցի ես:

— Կարթը շատ թափով դուրս քաշեցի, օդում կեռիկից պոկվեց:

— Իսկ գետում էլ ի՞նչ ձուկ կա:

Նա ցույց տվեց իր օրվա որսը: Ձկներից մեկը կարծես մկնիկ լիներ՝ մկան բեղերով ու բերանով:

— Մկնոեխ է,— սկսեց բացատրել տղան,— մեզ մոտ մկնոեխ են ասում:

— Միայն ձո՞ւկ ես որսում:

— Չէ, մեկ-մեկ անտառ էլ եմ գնում. Նապաստակ կա, թռչուններ,— ու ոգևորված շարունակեց,— մեր անտառներում գայլ, վարազ, այծյամ, քարայծ, արջ, կզաքիս, խորքերում լուսան ու հովազ էլ են պատահում:

— Արջ ու վարազ էլ ես որսո՞ւմ:

— Չէ,— ու մենք իրար հետ ծիծաղեցինք: Բասուտա գետն էլ միացավ մեր ծիծաղին:

Այդ կողմերում երևի այդպես էլ եղել է, մարդն ու բնությունը միասին ծիծաղել են, իրար հետ էլ մռայլվել:

### ՎԵՐԻՆ ԽՈՏԱՆԱՆ

«Մեր գյուղը,— պատմում է Վ. Խոտանանի դպրոցի ուսուցչուհի Ալմարա Անտոնյանը,— ռազմական գործիչների դարբնոց է: Այսօր խոտանանցին հպարտությամբ է տալիս նրանց անունները. զորավար Անդրանիկի զինակից Պողոս Տեր-Դավթյան (որի մասին գրված է Սերո Խանզադյանի «Հայրենապատում» գրքում), նշանավոր հեղափոխականներ Բագրատ Հարությունյանի և Անահիտ Լալայանի զինակից ու ընկեր, հետագայում բրիգադի կոմիսար Համայակ Տեր-Դավթյան, Նժդեհի կողմից գազանաբար խոշտանգված բոլշևիկ Բալասան Բալասանյան, Սամսոն Տեր-Պետրոսյան, Հայրենական մեծ պատերազմում փառաբանված գնդապետներ Մուշեղ Կարապետյան, Արտաշես Ղազարյան, Նապոլեոն Մինասյան, զինվորական պատմաբան, գրող Հայկ Հայրապետյան, փոխգնդապետներ Ալեքսանդր Անտոնյան, Լյոնյա Անտոնյան, մայորներ Վոլյա Միքայելյան, Ռոբերտ Մարտիրոսյան, Արտավազդ Գալըստյան...

Վերին Խոտանանի 8-ամյա դպրոցի աշակերտները չեն մոռացել իրենց համագյուղացի մարտիկներին: Նրանք գիտեն, որ հուշը պետք է ներկայացվի վահանակի վրա, ալ-

բոմում, թանգարանում և ապրի սերնդե-սերունդ: Դպրոցում աշակերտները ձեռնամուխ են եղել ռազմահայրենասիրական թանգարանի ստեղծմանը, որին տվեցին «Խոտեան» անունը (ըստ դիցաբ. ստուգաբանության՝ անունը ծագել է «հաց» և «աստված» անվանամիացումից կամ՝ «Խուտորնի» հեթանոսական աստծու անունից): Վերականգնվում է գյուղի պատմությունը, հավաքվում են հեղափոխական և Հայրենական մեծ պատերազմի ժամանակների փաստագրական նյութեր: Առանձնակի ուշագրավ է գյուղի առաջին ուսուցիչ, հետագայում զինվորական նշանավոր գործիչ, բրիգադային կոմիսար Հմայակ Տեր-Դավթյանի մասին պատմող անկյունը, որտեղ ամփոփված են նաև մարշալ Հ. Ք. Բաղրամյանի հուշերը սիրելի հրամանատարի և զինակցի մասին: Հայրենական մեծ պատերազմի մասնակից 210 խոտանանցիների մասին միշտ կխոսի «Ոչ ոք չի մոռացվել, ոչինչ չի մոռացվել» խորագրով անկյունը, որտեղ տեղադրված են վահանակներ, ալբոմներ, փաստագրական այլ նյութեր:

Պիոներները նամակագրական կապ ունեն համագյուղացի զինվորական գործիչների հետ, իսկ վերջերս ստացան գնդապետ Մուշեղ Կարապետյանի անձնական իրերից մի քանիսը, որոնց մեջ են մարշալ Բաղրամյանի նամակները Մուշեղ Կարապետյանին, և լուսանկարներ՝ մարշալ Հ. Ք. Բաղրամյանը գեներալներ Աշոտ Ղազարյանի, Հայկ Մարտիրոսյանի, Նվեր Սաֆարյանի հետ:

Օրեցօր թանգարանը հարստանում է նոր նյութերով: Կարելի է կարծել, թե այս աշխատանքը կատարում է մի մեծ դրուժինա: Ցավալի է, որ տիպային հիանալի դպրոցական նոր համալիրը ստացած պիոներ-դպրոցականները ընդամենը... տասնչորսն են: Մի՞թե հերոսություն չէ 10 պիոներով պլանավորված 4000-ի փոխարեն հավաքել 8000 թելամետր ծխախոտատերև: Ամենամյա լավագույն աշխատանքի համար Նորաշենիկի պետական տնտեսության ղեկավարությունը նրանց տրամադրեց ՍՍՀՄ-ի տեսարժան վայրերով անվճար երթևեկության ուղեգրեր»:

Ընդհանրապես խրախուսանքի է արժանի շրջանի ողջ աշակերտությունը: Ափսոս, որ գյուղերում ապրող աշակերտները չեն կարող մասնակցել Քաջարանի և Ղափանի պիոներտներում գործող խմբակների պարապմունքներին:

Ավտոբուսների չվացուցակը այդ հնարավորությունը չի տալիս, իսկ նրանք արդեն գիտեն, որ Ղափանում նոր պիոներպալատ է կառուցվում...

Փոքրիկ քաղաքի յոթը պանդոկներից ես գերադասում էի Վիլհելմ Լուկինը, որտեղ թե մաքուր էր և թե հանգիստ, գարեջուրն էլ՝ փրփրառատ ու զով, իսկ թթու կաղամբով նրբերշիկը՝ վեր ամենայն դովեստից: Համարյա յուրաքանչյուր երեկո զբաղեցնում էի սրահի դռան դեմի սեղանը, իսկ ծերունի պանդոկապան Լուկին, որն իր «դիտակետից» աչալուրջ հսկում էր կարգ ու կանոնը, չմերժելով իմ հրավերը, գալիս էր, նստում հետս, և մենք զրուցում էինք դեսից-դենից: Նա իր հոր հետ պատանության օրերին առևտրական գործերով եղել էր Բաթումի նավահանգստում և այդ պատճառով ընդգծված համակրանքով էր վերաբերվում ինձ՝ կովկասցուս:

Ծովափին յուրահատուկ չդադարող անձրևի հետևանքով Լուկը համարյա թե չէր տեսել Բաթումը և, մի ողջ շաբաթ մնալով նավում, ետ էր վերադարձել հայրենիք, իսկ այժմ հանաքով հարցնում էր.

— Պարոն, ասացեք խնդրեմ, այնտեղ անձրևը դադարե՞լ է, թե՞ ոչ:

Ես էլ, չնայած երբեք Բաթումում չեմ եղել, նրա այդ սրախոսությանը պատասխանում էի.

— Վերջին կես հարյուրամյակի ընթացքում Բաթումի կլիման ոչ մի զգալի փոփոխության չի ենթարկվել:

Մենք, իրարից գոհ, ժպտում էինք միմյանց ինչպես համախոհներ, և շարունակում զրույցը:

Մի անգամ էլ, ուշ երեկոյան, երբ մոտեցել էր պանդոկը փակելու ժամը, նա հայացքը գցեց պատի ժամացույցին և ասաց.

— Ոստիկանության ժամն է...

Եվ հիրավի, քիչ անց սրահի դուռը բացվեց, և ներս մտավ բավականին տարօրինակ արտաքինով մեկը: Նորեկը բարձրահասակ էր, ավելի ճիշտ՝ լոլոզ, դեմքի աներեւթ արտահայտությամբ:

— Պարոն ոստիկան, մեզ մոտ համեցեք, մի գավաթ խմիչք անուշ արեք:

Նա իր աջ թաթը սեղմեց կրծքին, որտեղ սիրտն էր, և հրաժարվեց, պատճառաբանելով.

— Պաշտոնական պարտականություններս կատարելու ժամանակ ես ոգելից խմիչքներ չեմ օգտագործում.

Բայց երևում էր՝ նրան այս պանդոկում լավ գիտեին և շարունակեցին պնդել: Ոստիկանը մի քիչ էլ չեմուչումից հետո մոտեցավ սեղաններից մեկին, ձախ ձեռքով

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

# ՍԱՔՍՈՆԱՑԻ ԱՊՈՒՇԸ



վերցրեց բալի լիկյորով լի թասիկը, իսկ աջի ծալած ցուցամատի հոդով չխկացրեց սեղանին, որը նշանակում էր՝ բոլոր ներտածների կենացը: Ապա թասիկի պարունակությունը լցրեց բերանը: Հետո դատարկ թասիկը զգուշորեն դնելով սեղանին, երկու ձեռքը բարձրացրեց և տարուբերեց ականջների մոտ, որն երևի նշանակում էր և՛ շնորհակալություն, և՛ նոր թասից հրաժարվել, և՛ ցտեսություն:

Ոստիկանը նորից իր տնտղող հայացքը սահեցրեց նստածներիս վրա և ոչինչ կասկածելի չգտնելով, ետ-ետ գնալով, դուրս եկավ սրահից:

Պանդոկապանը պարզ և որոշակի ասաց.

— Ապո՜ւշ...

Ես զարմացա, նախ՝ որ Լույր կռահել էր իմ միտքը, և, երկրորդ, որ այդ ածականը նա օգտագործեց մաքուր հայերենով:

Երկմտանքս փարատելու համար դիմեցի նրան.

— Պարոն Վիլհելմ, Դուք ինչ որ բա՞ն ասացիք, թե՞ ինձ թվաց:

Նա ինձ նայելով կրկնեց.

— Այո, ասացի՝ ապուշ, նրան մենք այդպես ենք անվանակոչել:

— Պարոն Վիլհելմ, ասացեք խնդրեմ, ձեր լեզվով ի՞նչ է նշանակում «ապուշ» բառը:

Պանդոկապանը նայեց ինձ զննող հայացքով և պատասխանեց.

— Մի՞թե չգիտեք, ապուշը հիմարի մի տեսակն է, բայց ավելի մեղմ, անվնաս:

— Ներեցեք, միայն թե ձեր ասածը հայերեն խոսք է:

— Ի՞նչ եք ասում, ես այդ չգիտեի, բայց մենք էլ նմաններին ապուշ ենք անվանում,— ասաց նա տեղից բարձրանալով:

Մինչ այդ ինձ հայտնի էր, որ գերմաներեն դու-ն՝ դու է, թուռ-ը՝ դուռ, թէէ-ն՝ թեյ-ը, բայց որ ապուշն էլ ապուշ է՝ այդ ես չգիտեի: Միայն թե այդ մարդու դեմքի արտահայտությունն այնպիսին էր, որ մեզ մոտ էլ, անշուշտ, կստանար «ապուշ» մականունը:

Հետագայում ես այդ բառը փնտրեցի բառարաններում և չգտա: Գուցե այն բարբառային է, միայն Բեռլինից արևմուտք, Սաքսեն—Անհալա երկրամասում է «ապուշը» օգտագործվում նույն իմաստով, ինչ որ մեզանում:

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# «ԹԵԵՎ ՑՅՈՒՐԻԽՑԻ ԷՐ ՎԱՂՈՒՑ...»

1849 թ. Լոռվա Վարդաբլուր գյուղում ծնվեց մի մանչուկ՝ Հարություն Աբելյան անունով, որը մեծացավ և 1864 թվականի աշնանը, ավարտելով Թիֆլիսի Ներսիսյան դպրոցը, տեղի տնօրինության միջնորդությամբ մեկնեց Գերմանիայի Հայդելբերգ քաղաքը, հաջողությամբ հանձնեց ընդունելության քննությունները և դարձավ համալսարանի ուսանող: Կարճ ժամանակ անց նա այստեղից տեղափոխվեց Ցյուրիխի համալսարանի բնագիտության ֆակուլտետը: 1872-ին, 23 տարեկան հասակում, Աբելյանը արդեն քիմիական գիտությունների դոկտոր էր և Ցյուրիխի համալսարանի դասախոս:

Դեռևս Հայդելբերգի համալսարանում սովորելու տարիներին Աբելյանն աշակերտել է ժամանակի հռչակավոր բնագետներ Ռ. Բունզենին, Գ. Կիրխհոֆին, Հ. Հելմհոլցին, որոնք և նախանշեցին ապագա քիմիկոսի գիտական հետաքրքրությունների ուղեծրերը: Անվանի քիմիկոսը մինչև իր պայծառ ու լուսավոր կյանքի վերջը ապրել և ստեղծագործել է Ցյուրիխում՝ որպես նահանգային քիմիկոս և տեղի համալսարանի պրոֆեսոր, Գերմանիայի քիմիական ընկերության անդամ: Ադամյանը Հայաստանից, ինչպես նաև Կովկասի մյուս հայաշատ վայրերից, Գերմանիա և Շվեյցարիա ուսանելու եկած հայ երիտասարդության նեցուկն էր ու ապավենը: Նա երկար տարիներ Ցյուրիխի հայ գաղութի պատվավոր նախագահն է եղել:

Մեծ քիմիկոսի բազմամյա գիտական հետազոտությունները նվիրված են վերլուծական քիմիայի տարբեր բնագավառներին՝ հիմնականում նավթային քիմիային: Աբելյանի անունով է կոչվում նավթային արգասիքների բոցավառման պրոցեսում անջատված ջերմության քանակը որոշելու սարքավորումը: Նա այսպես կոչված գիտական սննդաքիմիայի ստեղծողներից է, որին նվիրել է գիտական շատ հոդվածներ, առանձին գիրք է գրել գարեջրի քիմիայի, տնտեսավիճակագրության պատմության վերաբերյալ: 1884-ին Ցյուրիխի նահանգում բռնկված ժանտախտի համաճարակը վնասազերծելու հանձնաժողովի կազմում էր նաև 35-ամյա պրոֆեսոր Հարություն Աբելյանը: Ցյուրիխի դատաքննչական մարմինները քիմիային առնչվող բազմաթիվ հարցերով մշտապես դիմում էին հայազգի քիմիկոսին:

Առանձնահատուկ ուշադրության է արժանի Աբելյանի գերմաներեն գրած «Ս. ռաջնորդ որակական անալիզի» դասագիրքը, որի վերջին՝ 15-րդ հրատարակությունը, լույս է տեսել 1920 թվականին և թարգմանվել տարբեր լեզուներով: 1897 թվականի օգոստոսին Պետերբուրգում գումարված միջազգային երկրաբանական 7-րդ համաժողովի մասնակիցներից էր նաև Հարություն Աբելյանը:

Մեծ բնագետն ու մանկավարժը երկու անգամ եկել է հայրենիք՝ Արարատ լեռան գագաթը բարձրանալու նպատակով: Բայց երկրորդ այցելության ժամանակ միայն, 1896-ի սեպտեմբերին է իրականանում նրա նվիրական երազանքը: 1896-ի սեպտեմբերի 14-ին նա Արարատ լեռան գագաթին էր: Վայրէջքի ժամանակ մեծ բնագետը ականատես է եղել չափազանց հետաքրքիր մի երևույթի՝ տեղացել է կարմիր ձյուն, որից նա փոքր քանակությամբ տարել է Ցյուրիխ:

Ժամանակակից գիտությունը նշված երևույթը բացատրում է այսպես: Տիեզերական տարածությունից ժամանակ առ ժամանակ երկրի վրա են ընկնում երկնային քարեր՝ մետեորիտներ: Շատ հաճախ այդ քարերը օդում վեր են ածվում չափազանց մանր մասնիկների, և երկրի վրա նստում է տիեզերական փոշի, որի գույնը երբեմն լինում է կարմիր:

Արդյունաբերական ձեռնարկություններին մոտ գտնվող խոշոր բնակավայրերում նշված փոշին հազիվ թե նկատելի լինի, քանի որ այդպիսի տեղերում օդը կեղտոտված է, և ձյան մակերեսը հազվադեպ է մաքուր լինում: Սակայն սակավա-

բնակ, առավել ևս անմարդաբնակ վայրերում, ինչպիսին է Արարատ լեռան գագաթը, տեղացող ձյունը կարող է օդում ներկվել և տեղալ որպես «կարմիր ձյուն»:

Ձյունը կարող է կարմրել նաև հեռավոր անապատներից եկած փոշուց: Այսպես, Հարավսլավիայում՝ Բոսնիայի և Հերցոգովինայի լեռներում, դիտվել են դեպքեր, երբ վիթխարի տարածությունների վրա ձյո՛ւնը ծածկվել է Աֆրիկայից այդ վայրերը հասած կարմրավուն փոշով:

1965 թվականի գարնանը Սևանի շրջանում կարմիր ձյուն է տեղացել, որը հետզհետե փոխվել է դեղին գույնի: Նույն օրն Ապարանում դեղին ձյուն է եկել, որի ծածկույթի հաստությունը հասել է մոտ հինգ սանտիմետրի:

1962 թ. Պենզայի մարզում ևս տեղացել է գունավոր ձյուն, իսկ Ուրալում՝ դեղին անձրև:



1921 թվականի հոկտեմբերի 14-ին, հայրենի Վարդաբլուրից շատ ու շատ հեռու, Ցյուրիխում հողին է հանձնվել մեծ բնագետի, վաստակաշատ մանկավարժի և հասարակական մեծ գործչի աճյունը: Սգո հանդեսին մասնակցել են Հ. Աբելյանի գործընկերները, աշակերտները, Շվեյցարիայի պետական և քաղաքական գործիչները, Ցյուրիխի հայ համայնքի ներկայացուցիչները: Դոկտոր Վետշտայնը ասել է. «Թեև ցյուրիխցի էր վաղուց, բայց էությամբ միշտ հայ է մնացել»: Ցյուրիխի համալսարանի ռեկտոր դոկտոր Ֆուտերը, մանրամասնորեն նշելով Ցյուրիխի համալսարանին և գիտությանը մատուցած Աբելյանի ծառայությունները, ասել է. «Ցյուրիխի համալսարանի պատմությունից մի կարևոր կտոր այսօր հանձնըվում է հողին»:

Աբելյանի հուղարկավորությանը մասնակցելու համար Երևանից Ցյուրիխ էր մեկնել դարձյալ վարդաբլուրցի բնագետ, պրոֆեսոր, հետագայում ՀՍՍՀ գիտության վաստակավոր գործիչ Ավետիք Տեր-Պողոսյանը, որը, սակայն, չի հասցրել մասնակցել հուղարկավորությանը:

Վերադարձին նա Ցյուրիխից Երևանի նորաստեղծ համալսարանին է բերել քիմիայի լաբորատորիայի անհրաժեշտ նյութեր և սարքավորումներ:

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ
**քիմիական գիտ. թեկնածու**






# ԲԻՈՆԻԿԱ—

## —ապագայի գիտություն

Գիտնականների մեծ մասն այն կարծիքին է, որ հաջորդ հարյուրամյակը կոչվելու է «կենսաբանության դար», քանի որ ներկայումս գիտական մտքի զարգացումը արդեն ընթանում է տեխնիկան բնական օրինաչափությունների հետ համաձայնեցնելու և բնությանը ընդօրինակելու ուղղությամբ: Ահա թե ինչու վերջին տարիներին ճշգրիտ գիտությունների՝ մաթեմատիկայի, ֆիզիկայի, քիմիայի, երկրաբանության, ռադիոլոգիայի, կիբեռնետիկայի մասնագետները մեծ հետաքրքրություն են ցուցաբերում կենսաբանության նկատմամբ: Առաջացել են գիտության նոր ճյուղեր՝ կենսաֆիզիկա, կենսաքիմիա, կենսաերկրաքիմիա, ռադիոկենսաբանություն, տիեզերական կենսաբանություն, բիոնիկա: Ընդհանուր ճա-

նաչում գտավ այն պարզ ճշմարտությունը, որ բնության մեջ երկարատև էվոլյուցիայի ընթացքում կենդանի օրգանիզմներում մշակվել են այնպիսի կատարելագործված մեխանիզմներ և հարմարանքներ, որոնք անթերի են և տեխնիկայի համար առայժմ անհասանելի: Բիոնիկան ուսումնասիրում է կենդանի օրգանիզմների եզակի, հետաքրքիր հատկությունները՝ դրանք տեխնիկայի զանազան բնագավառներում կիրառելու նպատակով: Ինժեներները, կենսաբանների հետ միասին, կենդանիների և բույսերի օրգանների կառուցման սկզբունքների հիման վրա արդեն շատ ապարատներ են ստեղծել:

Դիտելով կենդանիների վարքագիծը, հաճախ հանդիպում ենք նրանց օրգանների անսահման բարդ գործունեությանը, նրանցից շատերի վարքը պարզապես անբացատրելի է, հանելուկային: Օրինակ, մեղուն անխափան կերպով կողմնորոշվում է տարածության մեջ, ամպամած և նույնիսկ խիստ մառախուղային եղանակի դեպքում: Բիոնիկներին հետաքրքրում է, թե ինչպես են թռչունները կողմնորոշվում հեռավոր թռիչքների ժամանակ (մրրկահավը թռչում է Տրիստան դա Կունյա կղզուց մինչև Գրենլանդիա, այսինքն՝ 10 հազար կիլոմետր, մորակտցարը՝ Ճապոնիայից Ավստրալիա՝ 5000 կիլոմետր): Ձկները նույնպես միգրացիայի ժամանակ լողալով մեծ տարածություն են անցնում: Միլիոնավոր տարիներ առաջ բնության մեջ արդեն գոյություն ունեին օրգանիզմներ, որոնց շարժումները կատարվում էին հրթիռային (սեպիա) սկզբունքներով:

Ինչպես հայտնի է, չղջիկները մթության մեջ հեշտությամբ են հայտնաբերում իրենց որսը և անխափան կերպով որսում: Նույն ձևով նրանք կարող են խուսափել նաև իրենց թշնամիներից: Սակայն ինչպե՞ս, մի՞թե չղջիկները մթության մեջ տեսնում են: Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ չղջիկները մթության մեջ չեն տեսնում, դեռ ավելին, նրանց տեսողությունը ցերեկն էլ բավականին թույլ է: Բանն այն է, որ այդ կենդանիները արձակում են մարդու ականջի կողմից չընկալվող բարձր հաճախականության ձայներ, որոնք հանդիպելով զանազան առարկաների, կենդանի օրգանիզմների, անդրադառնում են և կրկին վերադառնում չղջիկի ձայնային օրգանին, որի շնորհիվ չղջիկը անխափան կերպով որոշում է դրանց տեղը, խուսափում արգելքներից կամ բռնում որսը: Նույն սկզբունքով դելֆինները 3 կիլոմետր հեռավորությունից որոշում են ձկների վըտառի տեղը:

Այսպես կենդանի բնությունը հուշեց ռադարի ստեղծման գաղափարը:

Փաստորեն ռադարի ստեղծմամբ և օգտագործմամբ բիոնիկան իր առաջին քայլերը կատարեց: Փոկի ականջների կառուցվածքի սկզբունքով ստեղծված է հիդրոֆոն՝ ջրի մեջ զանազան ձայներ որսալու համար: Բզեզի աչքի ֆասետային կառուցվածքը միտք է հղացել կառուցելու ինքնաթիռի շարժման արագությունը ցույց տվող սպիդոմետր:

Բիոնիկան զբաղվում է ոչ միայն կենդանիների ուսումնասիրությամբ: Բույսերից էլ ընդօրինակելու շատ բան կա: Ինչպես հայտնի է, որոշ բույսեր արտաքին գրգիռների ազդեցության տակ շարժումներ կարող են գործել: Իսկ ինչ վերաբերում է միջատակեր բույսերին, ապա նրանք ապշեցնում են շեշտակի ռեակցիայով. նրանք կենդանու նման կարող են «ճանկել» որսը: Սակայն բիոնիկայով զբաղվող գիտնականների ուշադրությունը առաջին հերթին գրավեց արևածաղիկը: Ինչպես հայտնի է, այդ զարմանալի բույսի ծաղիկը անընդհատ ուղղված է դեպի արևը: Գիտնականները ուսումնասիրեցին այն մեխանիզմը, որը արևածաղկին ստիպում է հետևել արևի ընթացքին, և այդ նույն սկզբունքով ստեղծեցին տիեզերանավերի ու արբանյակների արևային մարտկոցները, որոնք, անկախ այդ տիեզերական ապարատների շարժման ուղղությունից, մշտապես նայում են արևին և լիցքավորվում: Այդ նույն սկզբունքով ստեղծվում են տիեզերքի խորքերում թըռչող ապարատների հետ կապի և հսկողության ավելի կատարյալ կայաններ:

Բրեմենյան համալսարանի գիտնականները (ԳՖՀ, Ներքին Սաքսոնիա) հայտնաբերել են տրադեսկանցիա կոչվող բույսի մի անսովոր հատկություն: Այդ բույսը կարող է հայտնաբերել ռադիոակտիվությունը ավելի ճշտորեն, քան գոյություն ունեցող ճշգրիտ սարքերը: Այդ սենյակային բույսը աճեցրել են ատոմային էլեկտրակայանի մոտ: Դիտումները ցույց են տվել, որ ռադիոակտիվության առկայության դեպքում տրադեսկանցիայի տերևների վրա գտնվող նուրբ մազմզուկները բնական ճանապարհով փոխում են իրենց

գույնը, ըստ որում այդ գունափոխությունը ավելի ինտենսիվ է տեղի ունենում, երբ շրջակա միջավայրում ռադիոակտիվությունը մեծանում է:

Այնուամենայնիվ, բիոնիկայի համար գործունեության մեծ հնարավորություններ ընձեռում է կենդանական աշխարհը: Հայտնի է, որ արծիվները օժտված են զարմանալի սուր տեսողությամբ: Մի քանի կիլոմետր բարձրությունից նրանք կարող են նկատել մանր կրծողներին և զանազան մանր առարկաներ, որոնք գույնով քիչ են տարբերվում շրջապատից: Օպտիկական ապարատների կատարելագործման նպատակով բիոնիկները որոշեցին մանրամասն ուսումնասիրել արծվի աչքի կառուցվածքը և ընդօրինակել տեխնիկայում: Դրա շնորհիվ ստեղծվեցին այնպիսի հեռադիտակներ ու օպտիկական գործիքներ, որոնք հնարավորություն են տալիս ավելի հեռուն տեսնել, թափանցել տիեզերքի գաղտնիքների մեջ:

Ավիոկոնստրուկտորների ուշադրությունը է գրավում թռչունների և միջատների մկանային թռչող ապարատի այն թեթևությունը, կոնստրուկտիվությունը, որն ապահովում է էներգիայի նվազագույն ծախսումը: Մեղուները իրենց թևերը թափահարում են մեկ վայրկյանում 180-ից մինչև 280 անգամ: Որոշ մանր թռչուններ Սահարան անցնում են 30 ժամում, մեկ վայրկյանում թևերի 5 թափահարումով: Աղյուծը մեկ ժամում վազում է 80, որմըզդեղնը՝ 72, ջայլամը՝ 90, հեպարդը՝ 110, թյունոս ձուկը լողում է ժամում 180 կիլոմետր արագությամբ:

Օձերի որոշ տեսակներ ունեն այնպիսի նուրբ զգայարաններ, որ կարող են արձանագրել ջերմության հազարերորդական աստիճան փոփոխություններին, այն էլ մեծ հեռավորության վրա: Դրա շնորհիվ նրանք զգում են որսի առկայությունը կամ ահազանգ են ստանում իրենց ըսպառնացող վտանգի մասին: Թիթեռները զգում են ջրի մեջ մեկը երեք հազարի հարաբերությամբ լուծված շաքարի առկայությունը: Վերը նշված հատկություններից բացի, չղջիկը ի վիճակի է իր ծղրտոցից երկու հազար անգամ ավելի ուժեղ աղմուկի մեջ որսալ մոծակի բզզոցը: Նշանակում է, չղջիկի լողական օրգանները մի քանի անգամ ավելի կատարյալ են, քան մարդու ստեղծած ամենակատարյալ ռադարային սարքավորումները: Եթե գիտնականները կարողանան մինչև վերջ պարզել չղջիկի լողական սելեկտորի կառուցվածքն ու «աշխատանքի» սկզբունքը, հնարավոր կլինի ստեղծել արտասովոր չափի զգայուն ռադիոաստղադիտակներ: Դա հնարավորություն կտա հայտնաբերել տիեզերքի ամենահեռավոր խորքերում գտնվող այս կամ այն օբյեկտը, որը ռադիոճառագայթներ է արձակում:

Բիոնիկան ուսումնասիրում է նաև ծովային կենդանիների վարքը: Դա ներկայումս մեզ համար խիստ կարևոր է խոր ջրերում երթևեկող սուզանավերի հետ ռադիոկապ պահպանելու համար: Այստեղ դժվարությունն այն է, որ ջրային միջավայրը կլանում է ռադիոալիքները: Սուզանավերի հետ կապ պահպանելու հուսալի միջոց գտնելու հարցում մեզ օգնության են հասնում ձկները: Գիտնականները նկատել են, որ ձկների վտառները անհամեմատ մեծ արագությամբ շարժվելիս կտրուկ փոխում են շարժման ուղղությունը, ետ շրջվում, կանգ առնում, ավելի մեծ արագությամբ սլանում և այլն: Դրանով նրանք ժամանակին խուսափում են վտանգից, անսխալ կերպով որոշում անվտանգ վայրերը, հուսալի թաքստոցները: Նրանք այդպես են վարվում նույնիսկ մեծ խորությունների վրա: Մարդկային տեխնիկան դեռևս շատ հեռու է այդպիսի կատարելության հասնելու համար:

Զգայական մեխանիզմի ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ թե՛ մանր և թե՛ խոշոր ձկները օժտված են չափազանց ուժեղ հոտառությամբ և այն էլ ջրային միջավայրում: Դա կապված է էլեկտրամագնիսական սպեկտրի ինֆրակարմիր հատվածի հետ: Երբ ջրի մեջ այս կամ այն հոտը կրում է թեկուզ խիստ աննշան փոփոխություն, ձկները անմիջապես զգում են և իսկույն կողմնորոշվում:

Մի այլ հետաքրքիր առանձնահատկություն ևս ունեն ձկները: Նրանք ջրի մեջ սուզվելիս և ջրի մակերես բարձրանալիս հավաքում և դուրս են հրում ջուրը: Հանից պարզվում է, որ նրանք այդ ձևով կարգավորում են ներքին ճնշումը: Յուրաքանչյուր խորության վրա ջրային միջավայրի արտաքին ճնշումը միշտ համապատասխանում է նրանց մարմնի ներքին ճնշմանը: Այս սկզբունքով են սուզանավերը բարձրանում կամ իջնում ջրային միջավայրում: Այժմ գիտնականների խնդիրն է ձկների օրինակով գտնել այն լուծումը, որը մարդուն հնարավորություն

կտա համարվելու զրոյական տիեզերական ձգողականությանը:

Բիոնիկներին այժեցնում է միջատների աչքի կազմությունը: Այդ տեսակետից առանձնապես հետաքրքիր է մայիսյան բզեզը: Ինչպես հայտնի է, նրա աչքերը բարդ փասետային են, բաղկացած հազարավոր աչքահատվածներից: Դրանք այնքան շատ են, որ յուրաքանչյուր աչքահատվածը կարող է բեկել արևի միայն մի քանի շող: Եվ փորձերը ցույց են տվել, որ այդ հատկության շնորհիվ մայիսյան բզեզը կարող է ամենաստույգ կերպով որոշել իր կողքով թռչող առարկաների արագությունն ու ըստ այնմ էլ կողմնորոշվել:

Դեռևս մեր դարի սկզբում, երբ մարդը ստեղծում էր առաջին թռչող ապարատները, օրինակներ էր վերցնում թռչուններից և թռչող միջատներից: Կենդանիները հուշեցին մարդուն թռչող ապարատների չափերը, ձևը, թևերի բացվածքը: Հետագայում ևս, ուսումնասիրելով թռչունների թռիչքի առանձնահատկությունները, մարդը կարողացավ կատարելագործել ինքնաթիռները և ուղղաթիռները: Այսօր, երբ օդագնացությունը զարգացման բարձր մակարդակի է հասել, տեխնիկան շարունակում է օրինակներ վերցնել թռչող կենդանիներից և միջատներից:

Բիոնիկան անսահմանորեն բարդ գիտություն է, որը ծնվել և շարունակում է զարգանալ, սերտորեն կապված մյուս գիտությունների՝ կենսաբանության, կենսաքիմիայի, կենսաֆիզիկայի, մեխանիկայի, հոգեբանության, էլեկտրոնիկայի, և, իհարկե, կիբեռնետիկայի հետ, որը հանդիսանում է մի շարք գիտությունների համադրություն: Բիոնիկան հաստատում է այն հանրահայտ ճշմարտությունը, որ բնությունը մեր ամենալավ ուսուցիչն է, որից պետք է սովորել և որին անհրաժեշտ է մշտապես ընդօրինակել: Եվ դա զարմանալի չէ. միլիոնավոր ու միլիարդավոր տարիների ընթացքում բնության մեծ արհեստանոցում փորձարկվել են միլիոնավոր օրինակներ, կատարելագործվել, մինչև որ ի հայտ են եկել ամենակատարելագործվածները, ամենանպատակահարմարները: Բիոնիկան ուսումնասիրում է հենց այդ փորձը: Ահա թե ինչու է նա համարվում ապագայի գիտություն:

**ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

**Հոգեբանական գիտությունների թեկնածու Լեյլի Այունցը, որ դասավանդում է Երևանի Բրյուսովի անվան օտար լեզուների ինստիտուտում, պատերազմի ահեղ տարիներին աշխատում էր Պենզայի մարզի Անենկով գյուղում գտնվող մանկատանը՝ իբրև ուսմասվար:**

**Ստորև տպագրում ենք պատառիկներ Լ. Այունցի այդ տարիների հուշերից:**

# «Ես մայրիկիս եմ ուզում»

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

1943 թ. ցրտաշունչ ձմեռն իր թևի տակ էր առել անծայրածիր դաշտերն ու բլրակները: Անենկով գյուղը թառած էր բարձունքի վրա, իշխող դիրք ուներ հարևան գյուղերի նկատմամբ:

Այնքա՜ն չարիք, վիշտ ու տանջանք էր պատճառել պատերազմը՝ ամենուրեք հարազատների կորուստ, որբացած երեխաներ, ամեն ինչի կարիք: Միայն մի տենչանք հավատ և ուժ էր տալիս կանանց, ծերունիներին, պատանիներին՝ դուրս վռնդել թշնամուն մեր երկրից, ոչնչացնել ֆաշիզմը:

Պետության, ինչպես և ողջ ժողովրդի, մեծ հոգսերից մեկը որբերին պահել, պահպանել, նրանց կրթելն ու դաստիարակելն էր:

Թշնամին մոտեցել էր Մոսկվային: Այդ դժվարին օրերի ծանր հոգսերից մեկը մանկատները երկրի խորքը տանելն էր: Եվ ահա Մոսկվայի № 26 մանկատունը

հայտնվեց Անենկովում: Գյուղի բնակչությունը սրտագին ընդունեց որբերին, մանկատանը հատկացվեց իրարից ոչ հեռու երկու շենք:

Մանկատան սաները բաժանվում էին երեք խմբի.

1. Ավագներ (12—15 տարեկան)
2. Դեռահասներ (7—12 տարեկան)
3. Նախադպրոցական տարիքի երեխաներ (5—7 տարեկան):

Փոքրիկների խմբում էր Ալյոշա Վերյովոչկինը: Նա բոլորից շատ էր մղկտում, հաճախ լալիս ու կանչում էր իր մայրիկին, որը լուրջ հիվանդ էր ու գտնվում էր Մոսկվայի հիվանդանոցներից մեկում: Հորից լուր չկար, նա ռազմաճակատում էր:

Ձմեռվա մի ցուրտ երեկո էր, բայց սենյակներում ու ննջարաններում հաճելիորեն տաք էին, վառարաններում ճթճթալով վառվում էին մայրու և կեչու փայտերը, տարածելով անուշ բուրմունք:

Երեխաները նստել էին ընթրիքի, և մեկ էլ հերթապահները նկատեցին, որ Ալյոշան չկա:

Փոքրիկներից մեկը հայտնեց, որ նա վաղուց դուրս է եկել բակից:

Անհանգստացած դաստիարակչուհին դուրս ելավ բակ, նրա ետևից՝ մանկատան «վետերան» Միտյան:

«Ալյոշա, Լյոշենկա» գոռաց նա. ոչ մի արձագանք... Ողջ մանկատունն արդեն գիտեր, որ Ալյոշան չկա:

Վարիչն իր մոտ կանչեց Միտյա Գլուշկովին և Լյովա Սինելոբովին՝ «վետերաններին»:— Տղաներ,— դիմեց նա այդ երկուսին,— անմիջապես մեծ սահնակին լծեք Զորկային և, որքան կարելի է արագ, վերցրեք մեծ մուշտակը: Նա կռահեց, որ մանչուկը ճանապարհ է ընկել դեպի Մոսկվա՝ գտնելու իր մայրիկին:

Տղաները կայծակի արագությամբ դուրս թռան, կատարելու վարիչի պատվերը՝ գտնելու փոքրիկ «փախստականին»:

Դաստիարակչուհի Թամարա Ալեքսանդրովնայի աչքի առաջ կինոժապավենի նման անցան միմյանց հաջորդող պատկերներ. ինքը ընթրիքից հետո փոքրիկների ննջարանում հեքիաթ էր պատմում, ապա մոտենում նրանց մահճակալներին, գուրգուրում, հորդորում, որ շրջվեն աջ կողմի վրա, աչիկները փակեն, քնեն: Ահա և Ալյոշայի մահճակալը: Մանչուկը իրականությունից վերացած՝ համարյա անթարթ նայում է առաստաղին:

— Ալյոշենկա, բալիկս, դու էլ շուռ արի աջ կողմիդ ու քնիր:

— Ես մամայիս եմ ուզում, իմ մամային, որտե՞ղ է նա, Մոսկվայում է, չէ՞:

— Մամադ շուտով կգա, հարազատս, կգա քո ետևից, քնիր:

— Մայրիկս միշտ նստում էր մահճակալիս մոտ ու երգում էր ինձ համար, հեքիաթներ էր պատմում... գրկում էր, համբուրում ինձ: Ես մայրիկիս եմ ուզում:— Տղայի աչքերում արցունքներ են երևում, նա լալիս է:

Դաստիարակչուհու կոկորդը սեղմվում է, արցունքները խեղդում են նրան և, հազիվ զսպելով հեկեկանքը, ասում է.

— Կուզե՞ս, միայն քեզ համար, երգեմ:

— Չեմ ուզում, ես մայրիկիս եմ ուզում,— ու նա երկար ժամանակ արթուն մնաց: Նրա աչքի առաջ երևի հառնում են պատկերներ իր մանկության երջանիկ օրերից. իրենց բնակարանը, հայրիկը, որ իրեն զբոսանքի էր տանում, վեր-վեր թռցնում իրեն... Առաջին տեղը, այնուամենայնիվ, մայրիկն է գրավում, նրա հետ են երեխայի մտքերը:

Մայրիկը հիվանդանոցից անընդհատ նամակներ էր ուղարկում իր զավակին, որ դեռ կարդալ չգիտեր, մանկատան վարիչին, դաստիարակչուհուն, խնդրում, որ լավ հետևեն իր երեխային, նկատի ունենան, որ նա շատ զգայուն է, կարող է կարոտից հիվանդանալ... և ահա Ալյոշան չկա...

Երեխաների մեծ մասը և բոլոր աշխատակիցներն արթուն էին, երբ սահնակը բակ մտավ, և Միտյան Ալյոշային գրկած ներս բերեց ու պառկեցրեց անկողնում: Կարծես մի ծանր բեռ ընկավ բոլորիս ուսերից՝ երեխան գտնվեց...

Տղաներն անցել էին երկար ճանապարհ ու Աբլյազով գյուղի վերջին խրճիթի մոտ, ճանապարհի եզրին, աղջամուղջից կապտին տվող ձյան վրա նկատել էին մի սև կետ: Ալյոշան էր: Երեխան համարյա քնել էր, չէր զգացել, որ ձեռքերն ու քթիկը սառել են: Միտյան իսկույն հասկացել էր վտանգը՝ ձյունով շփել էր սառած տեղերը, երեխային փաթաթել մուշտակով ու պառկեցրել սահնակում: Տաք վերարկուն, մորթե գլխարկն ու թաղիքե ոտնամաններր պահպանել էին նրան:

Ալյոշան մինչև առավոտ քնած մնաց իր անկողնում, վերարկուն հանելիս անգամ չզարթնեց: Երբ առավոտյան բացեց աչքերը, հարցրեց. «Ո՞ւր է մամաս»:

# Վիլիկը



Մեր մանկատան փոքրիկների սիրելին էր 13 տարեկան Վլադիլեն Սյոմուշկինը, որին բոլորս Վիլիկ էինք կանչում: Երբ փոքրերի սենյակի դուռը բացվում էր ու ներս էր մտնում ժպտերես տղան, երեխաները անմիջապես շրջապատում էին, և ամեն մեկն աշխատում էր բռնել ձեռքը, փաթաթվել նրան:

Գեղեցիկ էր Վիլիկը՝ սևորակ աչքերը ողողված էին բարությամբ, թուխ, խիտ մազերը թափվում էին ու ծածկում լայն ճակատը, վարդագույն այտերը և մի փոքրը հաստոտ շրթունքները վկայում էին, որ նա դեռ երեխա է:

Նա իր ազատ ժամերին փայտից խաղալիքներ էր սարքում, թելից՝ գնդակներ, ուրախություն պատճառում խաղալիքի կարոտ փոքրիկներին, ինքն էլ սիրով խաղում էր հետները, կարծես փոքրանում էր:

Վիլիկի հայրը զոհվել էր, իսկ մայրն ապրում էր Սիբիրում: Տղան հաճախ նամակներ էր ստանում նրանից, ստանում էինք նաև մենք՝ Վիլիկի դաստիարակ-

ներս: Ամեն անգամ, երբ Վիլիկը մորից նամակ էր ստանում, նրա գեղեցիկ դեմքն ավելի էր պայծառանում, հաճախ նա բարձրաձայն կարդում էր մոր գրածը, մանավանդ, երբ բովանդակությունը ոգեշնչող էր լինում, ուրախությունը բոլորինս էր դառնում:

Պատերազմի վերջին օրերն էին...

Գարնանային մի գեղեցիկ օր մայրը հեռագրով հայտնեց, որ գալիս է...

Այդ օրը երեխաները ուրախ էին, բայց և տխուր. մայրը կարող էր իր հետ տանել որդուն, անչափ սիրված Վիլիկին:

Վիլիկը դաստիարակներիս անփոխարինելի օգնականն էր: Կարեկից, բարի, քաղաքավարի այդ պատանին բոլորիս հարազատացել էր, բոլորիս սրտերը գրավել:

Ահա և եկավ Վիլիկի մայրը՝ մի բարձրահասակ, գեղեցիկ կին, հագին՝ մգդակած բաճկոն և տղամարդու սապոգներ: Թելից գործած գլխարկի տակից քունքերի վրա թափվել էին շագանակագույն մազերը, սակայն գորշ հագուստը չէր ստվերել նրա բնական գեղեցկությունը:

Նրա ձեռքն ամուր բռնել էր մոտ 3 տարեկան մի սիրունիկ աղջնակ, որ անծանոթ միջավայրում հետաքրքրությամբ նայում էր իր չորս կողմը:.

Սրտաճմլիկ էր մոր և որդու հանդիպումը:

Երեկոյան, երբ երեխաները քնեցին իրենց ննջասենյակում, Վիլիկի մայրը մնաց իմ առանձնասենյակում՝ փոքրիկ Սոֆիկի հետ: Մենք երկար ժամանակ լուռ էինք, մերթ ընդ մերթ նայում էինք միմյանց՝ խորասուզված մեր մտքերի ու զգացմունքների մեջ: Կարծես հանկարծ ստեղծվեց մի մտերմիկ պահ, երբ ինքնաբերաբար բացվում են հոգու դռները, ստեղծվում փոխադարձ հավատի, բարեկամության մթնոլորտ, ու մարդս կարողանում է ասել այն, ինչ դժվար է ասելը:

— Ինձ թվում է՝ տղաս դժվարանում է թողնել իր այս հարազատ տունը, ձեզ և ձեր սաներին, որոնց հետ, ես դա զգում եմ, նա ամբողջ սրտով կապված է:— Մի պահ նա լռեց, ապա շարունակեց:— Ես որդուս ասացի, որ Սոֆիկը ընկերուհուս երեխան է, իբր մահվան մահճում նա ինձ խնդրեց չթողնել փոքրիկին, ու ես երդվեցի որդեգրել նրան,— կրկին մի պահ լռելուց հետո շարունակեց:— Գիտե՞ք, ես թաքցրի իրականությունը, ես չեմ կարող նրան ասել, որ Սոֆիկը իմ երեխան է, իր քույրիկը... և, դուք երևի նկատեցիք, ներքուստ տանջվում եմ... Սոֆիկի հայրը շուտով կգա մեզ մոտ՝ Թբիլիսի: Ինչպե՞ս ասեմ այս բոլորը զավակիս, գուցե նա ինձ չների, չգա ինձ հետ: Երկար ժամանակ նա ինձ չի տեսել, գուցե կտրվել է ինձանից, հեռացել ներքուստ,— կնոջ գեղեցիկ, թախծոտ աչքերը խոնավացան, վախվորած ու զննող հայացքով նա նայեց ինձ:— Դուք բարի եք, սիրում եք Վիլիկիս, նա էլ ձեզ է սիրում, գուցե դուք կարողանաք գտնել այնպիսի խոսքեր, որ նա չդատապարտի ինձ, սիրտը չկտրի ինձանից,— նրա կերկերուն ձայնը հուզմունքից երբեմն խզվում էր:

— Հիմա արդեն ուշ է, դուք հոգնած եք, քնեք: Վիլիկը խելացի և բարի տղա է, նա ձեզ վիշտ չի պատճառի, վաղը ես կխոսեմ նրա հետ,— ասացի այդ հոգնած ու տանջված կնոջը:

Ինձ համար դժվար էր հրաժեշտ տալ մի երեխայի, որին սիրում էի հարազատ որդուս նման... Բայց ահա նրա մայրը, մայր, որ երկար ժամանակ երազել էր տեսնել ու գգվել իր որդուն, որդին էլ՝ նրան...

Հաջորդ օրը, նախաճաշից հետո, մոր խնդրանքով Վիլիկը Սոֆիկին փոքրիկների հետ զբոսանքի տարավ մոտակա այգին: Երբ վերադարձավ, կանչեցի նրան ինձ մոտ: Նա ներս մտավ հուզված ու շառագունած:

— Նստիր, տղաս, քեզ շատ կարևոր բան ունեմ ասելու,— սկսեցի ես:

— Ես գիտեմ ինչ պետք է ասեք, Լեյլի Միխայլովնա, ես ամեն ինչ հասկացել եմ, Դուք հանգիստ եղեք: Ես գիտեմ, որ Սոֆիկը իմ քույրիկն է, և շատ ուրախ եմ, որ քույրիկ ունեմ...,— ժպտալով նայեց նա ինձ: Ինչպե՞ս էր կռահել ճշմարտությունը:

— Սոֆիկն ինձ շատ է նման, աչքերը, մազերը, անգամ եղունգները...,—շարունակեց նա:

Հուզված գրկեցի Վիլիկին, համբուրեցի ու չկարողացա զսպել արցունքներս:

Ճաշից հետո փոքր ու մեծ ճանապարհ էինք դնում բոլորից սիրված Վիլիկին իր մոր ու քույրիկի հետ: Մանկատնից, որքան ներում էին մեր միջոցները, «բաժինք», ճանապարհածախս տվեցինք նրան և ուտելիք՝ երեքի համար: «Բախտավոր լինես, Վիլիկ», մրմնջաց տարեց դայակը: Շատերը սրբում էին արցունքները:

Կար մի երգ հեռավոր աշխարհում,
Դու այն երգն ես կրկնում հեռավոր,
«Ես սիրում եմ, դու ինձ չես սիրում»
Եվ հին են քո խոսքերը բոլոր:

Պարում են խելագար խնջույքում.
— Ով կուզե՞ թող գաղտնիքն իմանա.–
Ոչ վերջ կա, ոչ սկիզբ այս երգում
Երեկ՝ ես, այսօր՝ դու, վաղը՝ նա...
Պտտվիր, պտտվիր, կարուսել,
Ես քո երգը վաղուց եմ լսել...
Պտտվիր, պտտվիր,
Ես քո երգը վաղուց եմ լսել:

1. Ղ. Աղայանի հեքիաթներից: 2. Դարասկզբի հայ անվանի բանաստեղծ և հասարակական գործիչ: 3. Հայ ականավոր գրող, հեղափոխական-դեմոկրատ: 4. Ռուս մեծ բանաստեղծ, «Սովրեմեննիկ» ամսագրի խմբագիր: 5. Գրական ժանր: 6. Ա. Բակունցի հերոսներից: 7. Փոխաբերական ժանրի ստեղծագործություն: 8. Գերմանացի մեծ գրող: 9. Մեծ բանաստեղծ, որն իր գլուխգործոց պոեմը գրել 60 տարում: 10. Արևմտահայ գրող: 11. Շիրվանզադեի երկերից. 12. Ամերիկահայ ականավոր գրող: 13. Գործող անձ Ն. Զարյանի «Արա Գեղեցիկ» դրամայում: 14. Հայ մեծանուն գրող: 15. Մ. Գորկու «Մայրը» վեպի հերոսներից: 16. Սովետահայ անվանի գրող:

Ժամանցի գաղտնագրում կկարդաք հայ գրողներից մեկի անուն-ազգանունը

*Առաջարկը՝ ՄԱՐՏԻՆ ՄԵԼՏՈՆՅԱՆԻ*

*ՎԱՍՀ, Ծաղկաձորի շրջ. Նարեկանի միջն. դպրոց, 10-րդ դաս.*

**«ՊԻՈՆԵՐ» № 5-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ՝**



ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# Ասեք՝ ո՞վ եմ ես

Թիկնոց եմ հագել,
Մեծ պարկ կա ուսիս,
Հարավից եկել,
Գնում եմ հյուսիս:

Իմ պարկի մեջ կան
Շյուղ ու սոսափ,
Եվ ինչքա՜ն, ինչքա՜ն
Ծիծաղներ ու ծափ:

Կան ժպիտ ու լույս.
Վրձին ու ներկեր,
Երազներ ու հույս,
Հին ու նոր երգեր:

Իմ պարկի մեջ կան
Հեքիաթներ ոսկե
Եվ կախարդական,
Ինչպիսի՜ խոսքեր:

Կա իմ պարկի մեջ
Սեր ու բարություն,
Բաշխում եմ անվերջ,
Անցնում՝ տնից-տուն:

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ր., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.:

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ 15 ԿՈՊ.